վրայ եղած վստահութեան յայտարարութիւնները՝ պաշտօնէից շրջանէն սկսեալ, դէպ ի վար, մինչեւ ամենէն ետքի լաւ աշակերտը։

գործեց, իբրեւ հեղինակութիւն՝ արուեստագիտութեան, վաճառականութեան, բնական պատմութեան, բնագիտութեան, մեղուաբուծութեան, ինչպէս նաեւ կենդանաբանութեան յառաջացմանը համար եղած ամէն խնդիրներու մէջ։

1885ի հունգարական տէրութեան արտահանդէսէն ի վեր՝ չկայ խնդիր մը, որուն մէջ իբրեւ մասնագէտ եւ ճարպիկ կարգադրող մասնակից ու գործադրիչ եղած չըլլայ Գողչայեան։ Թէպէտեւ ուսուցչաց, խել մը գիտնական ընկերութիւններու եւ համակրութիւնը յառաջացընող կաճառներու վերատեսուչ, կարգադրիչ եւ շատ մը գիտնական գրուածքներու յօրինիչն էր. — որ չէ թէ միայն սորված էր, հապա գիտէր միանգամայն սորվեցընել՝ առանց ցուցընելու եւ կեղծելու, — որ մնաց այս ամէն բաներու մէջ միշտ հեզահոգի եւ մարդասէր, — եւ ա՛ս էր իր կենցաղավարութեան գլխաւոր տիպը — այնու ամենայնիւ ամէն տեղ հոն էր՝ — բայց ո՛չ երբեք առանց հրաւիրանաց — ուր որ աշխատիլ եւ գործել պէտք էր։ Եւ ուր տեղ որ մէյ մը ներկայանար, հոն, իր հոգւոյն բովանդակ զօրութեամբը կը գործէր, — Պուտաբէշդի, Ակրամի, Տէպրէցինի, Եղիսաբեթուպոլսոյ, Կերլայ Հայաքաղքի եւ այլն գիտնական եւ մեղուաբուծական հանդէսները կրնան վկայ ըլլալ, իր անսուաղ գործունէութեանը։

Եթէ գրութեան ոճն — ինչպէս որ սովոր ենք ըսելու — նոյն ինքն մարդն է, այն ատեն ապահովապէս կրնանք իր վրայ այն արդար քննադատութիւնն ընել, թէ ինչպէս որ լուսաւոր միտք գիտցաւ խօսիլ եւ դասատուութիւն ընել, — բստ ամենայնի գիտցաւ ա՛յնպէս պարզ ու անա՛նկ առանց բռնազբօսութեան եւ դիւրահասկընալի կերպով գրել, որ զամէնք կը զարմացընէր ու կ'ապշեցընէր. բայց միանգամայն կը յանկուցանէր։

Հաստատութեամբ կրնանք ըսել, թէ Գողչայեան, իր բոլոր կենացը մէջ, իր օգտին, պատւոյն ու փառացն ամենեւին չնայեցաւ։ — Իր ճշմարիտ նկարագիրն՝ աս երկու խօսքին մէջ կը պարունակենք. "Սեպհական անձին համար ոչինչ. — ու ամէն լաւ բանի համար, ամենայն զոհողութիւն։"

Ափսո՜ս, որ ա՛ս՝ եւ ուրիշ ա՛յնչափ առաւելութիւններով առատապէս զարդարուած ու օրհնուած մեծ մարդն, իր կենացը՝ քառասունուիրեք տարուան հասակին — եւ օրհնութիւնաբեր եւ գիտութիւն ու լուսաւորութիւն սփռող ուսուցչութեան քսաներորդ տարւոյն մէջ, գարնանային առաջին բողբոջման ատեն՝ գերեզման տարուեցաւ։

Անանկ ապրեցաւ ու անանկ գործեց, ինչպէս մեծ արուեստագէտ մը։ — Ամէն օր, աւելի գեղեցիկ գծերով զարդարեց ու աճեցուց իր կարողութիւնները։ — Իր ճանչցած գոհարները՝ յղկելով մատոյց ու զետեղեց համակրութեան խորանին վրայ։

Աւա՜ղ, որ իր գործառնութեանց, բուն միջնակէտին, ինկաւ վրձինն իր ձեռքէն։ — Բթացաւ քանդակագործութեան գործիքն — ու եղաւ իր խորանը՝ մէկ շիրմի կոյտ մը։ — Տրտմութեամբ, առանձինն կը կենայ այսօր, Եղիսաբեթուպոլսոյ այս նշանաւոր զաւակը՝ Պուտաբէշդի հասարակաց գերեզմաննոցին մէկ աննշան տեղւոյն վրայ, բոլորովին թողուած, մոռցուած ու երբեմն ձգուած․․․։

ՅՈՎՀ. ԱՆՃՅԻ



# ԻՐԱՒԱԳԻՏԱԿԱՆ

## ԱԿՆԱՐԿ ՄԸ ՀԱՅ ԻՐԱՒԱՆՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ ԵՒ Յ. ԿԱՐՍՏԻ ՆՈՐ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

### 1.

Վերջին տարիներուս մէջ հայ իրաւագիտութեան ճիւղին արագաքայլ յառաջադիմութիւնն գեղեցիկ երեւոյթ մ'է միջնադարեան Հայաստանի մտաւոր եւ բարոյական կենաց պատմութեան համար։ Քննութիւնք եւ անտիպ ձեռագրաց հրատարակութիւնք մին քան զմիւսն կը կանխեն հրապարակի վրայ, կարծես ամէնն ալ միախորհուրդ նպատակ ըրած ոսկի շղթաներով մեղմել ժամանակի արագ արագ ընթացքն, որ սքողել կը ձգտի յաջորդացս աչքերէն մեր պաշտելի նախնեաց սրբազան կեանքը եւ այդ կենաց հիմն՝ օրէնքները, որոնցմով վայելած են կենաց քաղցրութիւնն։ Թէպէտ հայ իրաւագիտութիւնն ի սկզբանէ անտի ոչ այնչափ ազգայիններն հետաքրքրած է, որչափ օտարներն, որոնց կը պարտինք այս անպարիզն

մէջ առաջին ուսումնասիրութիւններն, սակայն հարկ է խոստովանիլ թէ բաւական գոհացուցիչ եղած է նաեւ ազգայնոց կողմանէ փոյթն, եւ մեզի զարմանալի է միշտ բանասէրի մը՝ Բասմաջեանի աժգոհութիւնն Եւրոպայի առջեւ այս ճիւղին տակաւին մտադրութեան առնուած չըլլալու նկատմամբ (ԲՆՍ. 1901, էջ 66)։ Ցիրաւի լքման մէջ կը թուի հայ իրաւագիտութիւնն դատելով այն աղքատ մատենախօսութենէն (Literatur), զոր կը ներկայացընէ ճառասացն համաժողովին ունկնդրաց, բայց յիրականին այն վիճակի մէջ չէ, ինչպէս պիտի ցուցընեն յաջորդ տողերս։

Թողլով այժմ հնագոյն շրջանի իրաւաբանական մատենագրութիւնն, որ հայկական իրաւանց աղբիւրներն կը կազմէ, մեր ուշադրութիւնն կը գրաւէ առաջին անգամ նաեւ իրաւանց պատմութեան համար, Հ. Չամչեանի եռահատոր Հայոց պատմութիւնն, ուր հեղինակն տուած է համառօտիւ իւրաքանչիւր ժողովի կանոններն, որ եւ աղբիւր ծառայած է շատ մը հայ եւ օտար հեղինակաց։ Չամչեանի այս կողմնակի երկասիրութենէ ետքը պէտք է յիշել Bienerի հատուածն Vorläufige Nachricht über einige noch jetzt geltende georgische und armenische Rechtssammlungen ի Kritische Zeitschrift für Rechtskunde und Gesetzg. des Ausl., II (1830), որ կը գրուէր այնպիսի ժամանակ մը, երբ ի Ռուսաստան խնդիրներ կը յուզուէին Պոլոժէնիէի հաստատութեան մասին, եւ Ց. Շահան Ջրպետեան ի Տփղիս պարապած էր նոյնին ծրագրով, որ եւ հրապարակուեցաւ 1836ին (Բարձրագոյն կարգադրութիւն [Պօլօժէնիէ] յղ. կառավարութեան գործոց լուսաւորչական Հայոց եկեղեցւոյ ի Ռուսաստան, Վաղարշապատ 1836)։ Ջրպետեան կ'ուսումնասիրէր նաեւ հայ իրաւանց վրայ գաղղիերէն երկեր, որոնք սակայն անտիպ մնացած են հեղինակին մահուամբն (հմմտ. Պօլոժէնիայի խնդրոց մասին Ա. Դ. Երիցեանց՝ "Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը եւ Կովկասի Հայք ԺԹ դարում. Մասն Բ. Կաթողիկոսութիւն Տ. Ցովհ. Ը. Կարբեցւոյ եւ Պօլօժէնիէ (1831—1842), Տփղիս 1895, էջ 257—428, 549—589. Ջրպետի երկասիրութեանց մասին՝ էջ 332—4 ծան.)։ Ոչ շատ վերջը լոյս կը տեսնէր Կարդինալ A. Maiի Scriptorum Veterum nova collectio e Vaticanis codicibus հաւաքածոյին Ժ հատորին մէջ Հայոց ժողովներու կանոնաց թարգմանութիւնն ի ձեռն Ընճառակեանի (Ecclesiae Armeniacae canones selecti. Romae 1838, t. X, p. 269—316), որ մեծապէս նպաստած է Եւրոպայի իրաւագէտ գիտնոց։ Brosset իւր Notice sur le Code géorgien, manuscrit de la Bibl. Royale (ի Nouveau Journal Asiatique, III (1829), p. 177—201, նոյնպէս Détails sur le droit public arménien, extraits du Code Géorgien du roi. Wakhtang, et traduits du Géorgien. Անդ IX (1832) p. 21—30. եւ Rapport sur un manuscrit arménien Mkhithar-Goch (ի Bull. de l'Akad. des Sc. de St. Pétersb. hist. phil. t. VI. col. 380—382, եւ Mélanges asiatiques, t. I (1848—52, p. 150—2) յօդուածներովն եւ Rapports sur un voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie (St. Petersb. 1851, p. 77 ff.) գործոյն մէջ կը ծանօթացընէր Մ. Գօշի Դատաստանագրոց հայերէնն եւ վրացերէն խմբագրութիւնն, որուն հայերէնի նուիրուած էին նաեւ Հ. Ղ. Ալիշանի յօդուածներն "Մարաշու վանքին Դատաստանագիրքը" (ԲԶՄ. 1848, էջ 40—44), "Ցաղագս իսկագիր եւ նախագաղափար օրինակի գրոցն Մ. Գօշի (անդ, 117—122), եւ "Ձեռագիր Մ. Գօշի" (անդ, 154—5), առթիւ Հայաստան լրագրոյն (1847, թ. 63) "Քանի մը ձեռագրաց վրայ տեղեկութիւն" հատուածին, ուր Ներսիսի Լամբրոնացւոյ թարգմանած Դատաստանագրոց Ցիշատակարանն կը հրատարակուէր եւ խնդիրներ կը յուզուէին Մ. Գօշի Դատաստանագրոց մասին։ Մխիթարայ վրացերէն խմբագրութեան նուիրուած էին նոյնպէս ընդարձակ էջեր Aug. v. Haxthausenէ Transkaukasia ճանապարհորդական նկատողութեանց մէջ (Leipzig 1856, II, p. 193—300. „Zur Jurisprudenz in Transkaukasien")։ Հաքսթհաուզէնի երկասիրութենէ տարի մը վերջն ի լոյս կը հանէր Ferd. Bischoff իւր մասնագիտական ուսումնասիրութիւնն՝ Das alte Recht der Armenier in Polen; aus Urkunden des Lemberger Stadtarchivs, 1—IV (ի թերթին Oesterreichische Blätter für Literatur und Kunde, Beilage zur österreichischen kaiserlichen Wiener-Zeitung 1857, Nr. 28, 33, 37, 39, pp. 217—307)։ Սոյն իրաւագէտիս ձեռքէն էին նաեւ Das alte Recht der Armenier in Lemberg (ի Sitzungsberichte der k. Akademie der Wissen-

schaften zu Wien, phil.-hist. Cl. **40** (1862), pp. 255—302. եւ Urkunden zur Geschichte der Armenier in Lemberg (ի Archiv für Kunde österreichischer Geschichtsquellen, **32**) Wien 1864, p. 155. Բիշոֆի հետ համաժամանակ կը հրատարակէր նաեւ Ed. Dulaurier: Étude sur l'organisation politique, religieuse et administrative du royaume de la Petite Arménie au temps des Croisades (Paris 1862. Extrait de Journal Asiatique, 5 série, XVII (1861) pp. 377—437 XVIII (1862) pp. 289—357), որ յատկապէս Ռուբինեան շրջանն կ'ընդգրկէր, որով պարապած էր եւ V. Langlois: Essai historique et critique sur la constitution sociale et politique de l'Arménie sous les rois de la dynastie Roupénienne, d'apres les documents orientaux et occidentaux conservés dans les depots d'archives de l'Europe, St. Pétersbourg 1860, 4°, p. 84 (Mém. de l'Acad. Imp. des sciences de St. Pétersb. VII, 3, t. III, Nr. 3.) Տես եւ V. Langlois: Le trésore des chartes d'Arménie ou Cartulaire de la chancellerie royale des Roupéniens, Venise 1863. 4°, p. 242. — Մ. Աղաբեգեան կը ձեռնարկէր հրատարակել «կանոնագիրքն» (Ծիլն Արարատի, 1867, էջ 126—136, 153—167, 193—206, 249—265, կը մնայ թերի), մինչ ուրիշ անուանի գիտնական վարդապետ մը — Հ. Յովսէփ Գաթըրճեան կը պարապէր նոյնին քննական հրատարակութեան, եւ լատիներէն ալ թարգմանելու նկատմամբ Հ. Պետերմանի հետ ի խորհուրդ կը մտնէր: Բայց Հ. Գաթըրճեանի այդ մեծ ձեռնարկութեան համար հաւաքած բոլոր ատաղձներն եւ ուսումնասիրութիւնքն մնացած են ցայժմ անտիպ (մաս մը հրտ. Տաշեան՝ Վրդ. Առաքելոց, էջ 429—442, հմմտ. եւ էջ 17): — Իսկ Սադովկ Պարոնչ իւր Rys Dziejow Ormianskich երկասիրութեան մէջ (Tarnopol 1869, p. 205—261) կու տար Լեհահայոց Դատաստանագիրքը: — Յաջորդ տարին (1870) Մ. Ալեքսիէվ Армянскій Судебникъ երկն ի լոյս կը հանէր, որուն հետ գրեթէ համաժամանակ Արարատ ամսաթերթն մաս մաս կ'ընծայէր ազգայնոց Աբէլ Աբեղ. Մխիթարեանցի գործն՝ «Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ, հանդերձ կանոնագրութեամբք ի պէտս ժառանգաւորաց» (Վաղարշապատ 1874, 8°, էջք ժե + 159): Այս երկասիրութիւնն թէեւ փոքր, բայց միակն ըլլալով երկար ժամանակ, մեծ ծառայութիւն մատուցած է բանասիրաց: Նոյն եօթանասունական թուականին սկիզբն էր որ Արմաշու հանդէսն Յոյս յերեւան կը հանէր կիլիկեան նորագիւտ օրինագիրք մը «Ասիզք Անտիոքայ» եւ իբրեւ ճաշակ յառաջաբանն եւ ցանկն ալ կը հրատարակէր (Յոյս 1870, էջ 226—233), իսկ Ձեռագրին վրայ տեղեկութիւն կը հաղորդէր Յովհ. քհ. Մկրեան (Անդ, 66—68), որ գրգիռ կ'ըլլար Հ. Ալիշանի ամբողջութեամբ ի լոյս ընծայելու Կիլիկեան պատմութեան համար ծանրակշիռ գործս, Assises d'Antioche reproduites en Français et publiées par la Société Mechitariste de St. Lasare. Venise 1876, 4°, pp. XXIII + 93. (հմմտ. եւ Սմբատ Գունդստապլ Հայոց եւ Ասիզք Անտիոքայ. ԲԶՄ. 1876, 307—327, նոյնն գաղղ. 288—306): Տաճկահայոց Ազգ. Սահմանադրութեան յօյզերն առիթ կու տային Աղ. Երիցեանի ուսումնասիրելու «Տաճկաստանի Հայոց իրաւունքները եւ նոցա սահմանադրութիւնը, պատմական տեսութիւն» (Փորձ ուսումնաթերթ, 1877, Ա. 367—93, Բ. 145—182. Գ. 139—177. Դ. 286—316): — Նոյն թերթն ոչ շատ վերջն յերեւան կը հանէր նաեւ հմուտ իրաւագէտի մը՝ Վահան Ծ. Վ. Բաստամեանցի գրչէն շարք մը իրաւաբանական յօդուածներու — «Դատաստանագիրք Մխիթարայ Գօշի, իրաւաբանական հետազօտութիւնք» (Փորձ 1879, Զ. 65—125, Է—Ը. 60—109, Թ. 51—105), որոնք, ինչպէս կը ծանուցուէր ծանօթութեան մէջ, յառաջաբանն կը կազմէին նոյն գիտնականին նոր ձեռնարկութեան, որ հեղինակի մահուընէ վերջն լոյս տեսաւ Էջմիածնի մամլէն խորագրով «Մխիթար Գօշի Դատաստանագիրք Հայոց, իրաւաբանական հետազօտութիւնք հանդերձ ծանօթութեամբք» (Վաղարշապատ 1880, 8°, էջք 180 + 442 + ժԲ): Բաստամեանց Վարդապետի գրչէն էին նաեւ յօդուածներս «Ամուսնութիւնը ըստ Հայոց եկեղեցական իրաւաբանութեան» (Փորձ 1880, Զ—Է. 148—167, Ը—Թ. 51—90, Ժ. 34—73, ԺԱ—ԺԲ. 137—164: 1881, Դ. 51—78, Է—Թ. 19—45): — Արեւելքի մէջ մինչ այսպէս կը յառաջադիմէր իրաւանց հետազօտութիւնն, ի Գերմանիա Ն. Լամբրոնացւոյ թարգմանու-

թիւնն՝ «Օրէնք թագաւորաց կոստանդիանոսի, Թէոդոսի եւ Լեւոնի թագաւորաց Հռովմայեցւոց», զոր ծանօթացուցած էր արդէն H. Petermann: Ueber die armenische Uebersetzung der Gesetze Constantins (ի Monatsberichte der k. Akad. der Wiss. zu Berlin 1867, pp. 419—424) կրկին քննութեան կ'առնուէր Sachau գիտնականէն, եւ կը հրատարակուէր գերմաներէն թարգմանութեամբ հանդերձ ի գիրս Syrisch-römisches Rechtsbuch aus dem 5. Jahrhundert, herausgegeben, übersetzt und erläutert von K. G. Bruns und Ed. Sachau. Leipzig 1880, 4°, pp. X + 149 + 346 (հմմտ. առ այս եւ R. v. Hube: Zur Beleuchtung der Schicksale des sogenannten Syrisch-römischen Rechtsbuches. ի Zeitschrift für Rechtsgeschichte. **16** N. F. 3. Jahrg. 1882, pp. 17—21). Նոյն տասնեակին կը վերաբերին եւ M. Ковалевскійի գործերս Законъ и обычай на Кавказѣ, t. I. p. 159—166, եւ Современный обычай и древній законъ. Москва. 1886, ուր տեղ կը շնորհուէր նաեւ հայ իրաւանց, զոր մատենախօսութեան կ'առնուր R. Dareste: Etude d'histoire du droit ի Journal des Savants, 1887, p. 115—117, նմանապէս ծանրացած հայկականին վրայ: Այլ եւս առած էր թռիչ հայ իրաւագիտութիւնն եւ բաւական յաճախութեամբ կային հրապարակի վրայ ուսումնասիրութիւններ, այնպէս որ ոչ հայագէտ մը — Josef Kohler կրնար գրել յատուկ յօդուած մը Das Recht der Armenier ի Zeitschrift für vergleichende Rechtswissenschaft, **7** (1888), p. 385—436: Իսկ Գ. Խալաթեանց հայ գրագիտաց ձեռքն կու տար «Ծրագիր հայ ազգագրութեան եւ ազգային իրաւաբանական սովորութիւնների», Մոսկուա 1887, 8° էջ 115: Հիւբշման կը գրէր հին Հայոց մերձաւոր ամուսնութեան վրայ. H. Hübschmann: Ueber die persische Verwandtenheirat ի ZDMG. **43** (1889) pp. 308—312: — Գերման գիտնականաց՝ Բիշոֆի եւ կոհլերի ուսումնասիրութիւններն ազգայնոց մատչելի կ'ընէր թարգմանութեամբ եւ ծանօթութեամբք Հ. Գր. Գալէմքեարեան (Բիշոֆ. Լեհահայոց հին իրաւունքը. ՀԱ. 1890, թ. 1—3, եւ կոհլէր, Իրաւունք Հայոց, ՀԱ. 1888, թ. 10—12. 1889, թ. 1, 3, 4. Երկուքն ալ արտատպ. «Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Բիշոֆ. Լեհահայոց հին իրաւունքը. 2. Կոհլէր, Իրաւունք Հայոց, Վիեննա 1890, 8° էջք 84 + 58. Ազգ. Մատ. Ա.): — Backham Անկիւրիայի ժողովոյն կանոններն հին հայ թարգմանութենէն կը շրջէր անգղիերէնի, R. B. Backham: The text of the Canons of Ancyra. Studia biblica et ecclesiastica. Oxford, 1891, p. 209—211: — 1894ին հանդէս կու գային իրաւագիտութեան դոկտորէ մը՝ Agop Megavorianէ Etude ethnographique et juridique sur la famille et le mariage armeniens précedée d'un aperçu historique. Lausanne 1894, 8° pp. 126, որով հեղինակն կու տար եւրոպացի գիտնոց նաեւ համառօտ ակնարկ մը հայ իրաւանց պատմութեան վրայ (p. 7—38), եւ Ս. Բահաթրեանցէ «Հողային եւ անձնական իրաւունքը հին Հայաստանում» (Տփղիս 1894, 8° էջ 76. արտատպ. Մուրճէ), Մ. Խորենացւոյ վրայ հիմնուած: Այս նկատմամբ աւելի կարեւոր էր՝ Մ. Գարագաշեանի հատուածն Հին Հայոց իրաւունքի մասին «Քննական պատմ. Հայոց» երկին մէջ (Տփ. 1895, բ. 1—55): Այն թուականներուս կ'ուսումնասիրէր Հ. Յ. Տաշեան ՀԱ.ի մէջ (1893—94) «Վարդապետութիւն առաքելոց անվաւերական կանոնաց մատեանը, թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ կանոնք Թադդէի», որ եւ լոյս կը տեսնէր առանձին (Վիեննա 1896, 8° էջք Թ + 442, Ազգ. Մատ. Ի.): — Յաջորդ տարին Գ. Քհ. Աղանեանց կը գրէր հատուած մը «Հայաստանեայց եկեղեցու կանոնագիրքը.» (Լումայ. 1897, Ա. 282—91.), եւ F. C. Conybeare կը թարգմանէր Ս. Սահակայ կանոններն The Armenian Canons of St. Sahak catholicos of Armenia (ի American Journal of Theology, **2** (1898), p. 828—848): — K. Güterbock հետազօտութեան կ'առնուր Դ—Զ դարու հռոմէական Հայաստանի քաղաքական իրաւունքն. Römisch-Armenien und die römischen Satrapien im 4.—6. Jahrhundert. Eine rechtsgeschichtliche Studie (արտատպ. ի գրոց Festgabe der Königsberger juristischen Fakultät zum Doktor-Jubiläum für Dr. Th. Schirmer) Königsberg, 1900, 8° pp. 58, որուն թարգմանութիւնն կու տար Ն. Յարոյ, «Բիւզանդական կայսրների կարգադրութիւններ Հայաստանում, պատմական հատուածներ Դ—Զ դարերին վերաբերեալ» (Լումայ. 1902, բ.

121—134. 163—178)։ — Ցանկապէս եւրոպացի գիտնոց ուշադրութիւնն հրաւիրելու համար հայ իրաւաբանութեան վրայ խօսած է Կ. Յ. Բասմաջեան 1900ին համեմատական պատմութեան միջազգային Բ. համաժողովոյն մէջ Հայ իրաւանց նկատմամբ ճառս. K. J. Basmadjian: Le droit arménien depuis l'origine jusqu' à nos jours (Mémoire présentée au Congrès international d'Histoire comparée, Paris 1900.) Macon 1901, 8° pp. 8. (Extrait des Annales internationales d'Histoire). Թարգմանութիւնն «Հայկական իրաւունք ի սկզբանէ մինչեւ մեր օրերը» (ԲնԱ. 1901. էջ 65—70)։ — Մտադրութեան կ'առնուէր նաեւ ուսումնասիրելու եղանակը. եւ կը նուիրէին այս մասին հատուածներ Լ. Նազարեանէ «Հայոց սովորութեան իրաւունքի ուսումնասիրութեան նշանակութիւնը եւ մեթոդը» («Վտակ» գրական-բանասիրական ժողովածու, Տփղիս, 1901, էջ 322—333). եւ Խ. Սամուէլեանէ «Հին Հայոց իրաւունքը եւ նրա հետազօտութեան մեթոդը. (Ազգագրական Հանդէս, ԺԱ գիրք (1904) 5—32)։ Վերջապէս ընդարձակ երկասիրութիւններ ալ կը ձեռնարկուէին, այսպէս Ն. Վ. Մելիք-Թանգեան՝ Հայոց եկեղեցական իրաւունքը. Ա. գիրք, Շուշի 1903. 8° էջք 807, (մատենախօսութիւն մ'ասոր վրայ Հանդ. Ամս. 1904, էջ 206—213)։ Մ.-Թանգեանի գործն կու տար բանասիրաց կանոնաց հաւաքածոյ մը, թէեւ ոչ բաղձալի կատարելութեամբ. իսկ Արիստ. արքեպ. Դաւթեան կը խմբագրէր նիւթի եւ աղբիւրենի կարգաւ մէն մի կանոն, զոր կը խորագրէր. «Կանոնք Ս. Ժողովոց եւ Հարց եկեղեցւոյ» (Ա. պրակ. Տփղիս 1904, 8° էջք 139, տպարան. Լոռմայէ)։ Յիշենք եւ Հ. Մ. Պոտուրեանի «Հայ կաթողիկոսութիւնն», զոր կ'ուսումնասիրէ մաս մաս Բազմավէպի մէջ նաեւ իրաւաբանական տեսակէտէ (ԲԶՄ. 1902, էջ 552—6. 1903, էջ 109—115. 1906, 399—405. 1907, 113—5. 216—18, 314—16)։ Կաթողիկոսի իրաւանց մասին կ'արժէ նշանակել նաեւ Մ. արքեպ. Սմբատեանցի «Տեղագիր Գեղարքունի ծովազարդ գաւառի» երկն (Վղրշպ. 1895, էջ 658—721)։

Ներկայ ժամանակս կը նուիրէ ընդարձակ ուսումնասիրութիւն մը Խ. Սամուէլեան «Մխիթար Գօշի Դատաստանագիրքը եւ Հայոց հին քաղաքական իրաւունքը (ուսումնասիրութեան փորձ)», որ մաս մաս կը հրատարակուի «Հանդէս Ամսօրեայ», թերթիս մէջ (1907, էջ 42—47, 78—84, 97—101, 135—139, 206—210)։

Բաց ի եկեղ. եւ քաղաքական իրաւունքէ, գրուեցան եւ կը գրուին հետազօտութիւններ Սովորութեան իրաւունքի վրայ ազգագրական տեսակէտով, այսպէս Խ. Սամուէլեան՝ Առեւանգմամբ եւ գնմամբ ամուսնութիւն. տեսութիւն հայ սովորութական իրաւունքից» (ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ. ԺԲ գիրք (1905) էջ 40—83). Նոյնպիսի տեսութիւններ են նաեւ Խ. Սամուէլեան՝ «Արեան վրէժ եւ փրկանք» (Ազգ. Ժ (1903) 269—303). «Հայ ընտանեկան պաշտամունքը» (Ազգ. ԺԲ. 203—234, ԺԳ. 112—130, ԺԴ. 156—174) եւ «Հայոց ժառանգական իրաւունքը» (Ազգ. ԺԵ (1907) էջ 68—80, շարունակելի)։ Դարձեալ Կ. Կոստանեանց՝ «Պռոյգ եւ տուայր» (Ազգ. ԺԳ (1906) էջ 131—138) եւ «Դաւիթ Վրդ. Ալաւկայ որդի» (Ազգ. ԺԳ. 105—132. ԺԵ (1907) էջ 62—67)։

Յիշեալ ուսումնասիրութիւններէ զատ առանձին փոյթ տարուած է նաեւ Ժողովոց եւ Ս. Հարց կանոններու պարզ կամ քննական հրատարակութիւն պատրաստելու եւ հրատարակելու, որոնցմէ ի միջի այլոց յիշենք. Աղեքս. Արքեպ. Պալճեան՝ որ կցած է իւր «Պատմ. կաթոլիկէ վարդապետութեան ի Հայս» երկին (Վիեննա 1879 էջ 191—298) բազմաթիւ ժողովոց կանոններ (նոյնն թարգմ. նաեւ Լատիներէն)։ — «Սոխակ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ» թերթն (1888 էջ 358 եւն) տուած է աշխ. թարգմանութիւն Առաքելական կանոնաց (կանոն Ա—ԼԴ)։ «Կանոնք Դունայ Ս. Ժողովոյն, ձեռագրերի համեմատութեամբ լոյս ընծայեցին Մխիթար Վրդ. եւ Ս. Տիգրանեան», ԱՐՐՏ. 1905, էջ 177—202 (առանձ. Վաղարշապատ. 1905. 8° էջ 28)։ — Կանոնք Ներսիսի կաթողիկոսի եւ Ներշապհոյ եպիսկոպոսի, հրտ. Ա. Վ. Դլըճեան ԱՐՐՏ. 1905, էջ 943—968։ — Կանոնք Սիոնի Հայոց կաթողիկոսի, հրտ. նոյն, անդ, 1905, Յաւել. Նոյ. էջ 1—23։ — «Զինուորական օրէնք Ներսէսի Լամբրոնացւոյ», ԲնԱ. 1902, էջ 321—28։ — Հայկական օրէնք Կիլիկեցւոց», անդ. 1907, էջ 14—18։

Իրաւաբանական ուսումնասիրութեանց այս երկար շարքին վրայ կու գան աւելնալ նաեւ «Կիլիկեան հայերէնի քերականութեան», յայտնի հեղինակ ուսուցչապետ Կարստի նշանաւոր երկասիրութիւններն, որոնք առանց տարակուսի

Նոր շրջան պիտի բանան Հայ իրաւաբանութեան պատմութեան մէջ։ Հայերէնագէտն Յ. Կարստ Վենետիկի եւ Վիեննայի Մխիթարեանց Մատենադարաններու մէջ Կիլիկեան հայերէնի քերականութեան համար լեզուագիտական խուզարկութիւններ կատարած միջոցին կը նկատէ առջեւն բացուած Հայոց իրաւունքի քննութեան համար ալ առատ ատաղձ, անմշակ եւ թոհ եւ բոհ վիճակի մէջ, որ եւ գրգիռ կ'ըլլայ իրեն պարապելու այս ճիւղով ալ եւ իւր աշխատութեանց արդիւնքն կ'ըլլան այն հսկայ հատորներն, որոնք խորագիր կը կրեն.

Dr. Jos. Karst: Armenisches Rechtsbuch. I. Bd. Sempadscher Kodex aus dem 13. Jahrhundert oder Mittelarmenisches Rechtsbuch nach der Venediger und der Etschmiadziner Version unter Zurückführung auf seine Quellen, herausgegeben und übersetzt. Strassburg. (Verlag von K. J. Trübner.) 1905 $4^0$ pp. J+XXXII+223. — II. Bd. Sempadscher Kodex aus dem 13. Jahrhundert in Verbindung mit dem Grossarmenischen Rechtsbuch des Mechithar Gosch (aus dem 12. Jahrhundert) unter Berücksichtigung der jüngeren abgeleiteten Gesetzbücher, erläutert von J. Karst. Անդ 1905, $4^0$ pp. VII+424.

Բուն բնագրին տպագրութիւնն կատարուած է Վենետիկ, Մխիթարեանց տպարանն, ինչպէս կը տեղեկանանք IV էջէն, ի Ստրասբուրգ միայն ճակատն եւ յառաջաբանն։ — Այս երկհատոր աշխատութիւններն ծնունդ կու տան նաեւ այն ուսումնասիրութեան, որ նախնաբար որոշուած էր գործոյն ներածութիւնն կազմել։ Այդ գրութիւնն է. J. Karst: Grundriss der Geschichte des armenischen Rechtes, I. Stuttgart, 1906. $8^0$ pp. 99. (Արտատպ. ի թերթէն Zeitschrift für vergleichende Rechtswissenschaft. XIX. Bd.); II. անդ. 1907. $8^0$ pp. 100 (Արտատպ. նոյն թերթէն XX. Bd.), որուն առաջին մասէն քանի մը հատուած լոյս տեսաւ թարգմանութեամբ Բազմավէպի մէջ ի ձեռն Հ. Յ. Աստուրեանի “Պրոֆ. Քարստի Ուրուագիծ հայկական իրաւագիտութեան պատմութեան„ (ԲԶՄ. 1907. էջ 71—73, 109—112)։ Ուսուցչապետ Կարստի այս աշխատասիրութիւնք շարժառիթ եղան նաեւ ուրիշ երկու համբաւաւոր գիտնականաց անգամ մ'եւս զբաղելու հայկական իրաւունքով, մին ծանօթ J. Kohlerն է, որմէ է Altsyrisches und altarmenisches Recht ի Zeitschrift für vergl. Rechtswissenschaft. XIX (1906), p. 103—130. եւ երկրորդն D. H. Müller, որ իւր Semitica, Sprach- und rechtsvergleichende Studien, ուսումնասիրութեան Բ. Տետրակն նուիրած է գրեթէ ամբողջապէս Հայ իրաւունքի հետազօտութեան (Հրտ. ի Sitzungsberichte der k Akademie der Wissenschaften. Phil.-hist. Cl. **154** Bd. 3 Abh. Wien 1906, $8^0$ pp. 88. Համմ. եւ նոյն Müllerի գրութեանս մասին տեղեկութիւնն ի Anzeige für k. Akademie, 1906. Nr. XII, p. 53—58). Գիտնոցս տեսութիւնք Կարստի տեսութեանց հետ նոր են բոլորովին Հայ իրաւանց պատմութեան մէջ, հարկ է հետեւաբար ասոնց ալ շնորհել յատուկ տեղ ներկայ ուսումնասիրութեանս մէջ, որ պիտի պատաղի գլխաւորաբար Կարստի գործերով։

(Շարունակելի։) Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ



## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ԵՂԻՇԷ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

(Շարունակութիւն։)

### ԳԼՈՒԽ Գ.

### § 1. ՕՏԱՐ ԳԻՏԵՐ ԴԵՆԻՄԱԶԴԷԶԻ ՄԷՋ

Զրադաշտի կրօնը չմնաց իւր սկզբնական պայծառութեան մէջ. շատ բան փոխուեցաւ դարերու ընթացքին մէջ, մանաւանդ երբ Աղեքսանդր կրակի մատնեց սրբազան բնագիրներու մեծ մասը։ Մոգերը, որ բուն մարական ցեղէ էին, իրենց յատուկ ըմբռնումները ներմուծեցին Դենիմազդէզի մէջ Աւեստայի վերակազմութեան ժամանակ. Նոր նոր վարդապետութիւններու դուռն էր այդ։ Աղանդներ, իրաւցընէ, անմիջապէս գլուխ վերցուցին վտանգաւոր սպառնալիքով. Մանէս, Քօբատ կամ Կաւատ, Մազդաք բաւական մտատանջեցին Դենիմազդէզը։ Զրուանական դրութիւնը, Միհիրի մայրածնութիւնը օտար են բուն աւեստական վարդապետութեան. այնպէս որ, ինչպէս կը ցուցընեն Եզնիկի եւ Եղիշէի տեղեկութիւնները, Սասանեանց ժամանակ Զրադաշտականութիւնը գրեթէ խանգարուած էր (Հարլէ, էջ XXXVI)։ — Եզնիկի սա դիտողութիւնը — “Եւ քանզի ընդ գրովք չեն կրօնքն, երբեմն զայն ասեն, եւ այնու խաբեն, եւ երբեմն զայս, եւ սովին խաբեն զոխմարս„ —, շատ լաւ կը բացատրէ թէ ինչ վիճակի հասած էր

## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ

### ԻՐԱՒԱԳԻՏԱԿԱՆ

### ԱԿՆԱՐԿ ՄԸ ՀԱՅ ԻՐԱՒԱՆՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ ԵՒ Յ. ԿԱՐՍՏԻՆԱՐ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

(Շարունակութիւն)։

**Զ.**

"Հայոց Դատաստանագիրքը" խորագրեալ առաջին երկու հատորներով, որոնց կը խոստանայ կցել ընդ հուպ երրորդ մ'ալ — "Կիլիկեան Հայոց բիւզանդական օրինագիրքն" — ուսումնասիրութեան կ'առնու Ուսուցչապետն Կարստ Միջին դարու Հայոց ազգային քաղաքական իրաւանց Մատեանն, որուն ներկայացուցիչն է Սմբատայ Գունդստաբլի Դատաստանագիրքն, որ թէեւ յինքեան խմբագրութիւն մ'է Մխիթար Գօշի Մատենին, բայց կը վայելէ նախապատուութիւնն ազգային աւելի անխառն նկարագրովն եւ գործածութեամբ վաւերացուած ըլլալովն։ Ըստ այսմ ալ Ա հատորն ամբողջապէս ընդգրկած է այդ Դատաստանագիրքն՝ հայ բնագրով եւ գերմաներէն թարգմանութեամբ. որուն իբրեւ Մեկնութիւն գրուած է Բ հատորն։ Իսկ „Grundriss der Geschichte des armenischen Rechtes" (Ուրուագիծ հայ իրաւանց պատմութեան) աշխատասիրութիւնն, որ ըստ նախնական դիտաւորութեան Հեղինակին պիտի կազմէր այդ հատորին Ներածութիւնն եւ այժմ անկախ լոյս կը տեսնէ երկու մասով իրաւագէտ Կոհլէրի ուսումնաթերթին մէջ, համառօտ պատմութիւնն է հայ իրաւագիտութեան ի սկզբանէ մինչեւ ԺԹ դար. որով գեղեցիկ կը զօդուի Սմբատայ Դատաստանագրոց պատմութիւնն ալ նախորդ եւ յաջորդ դարուց շղթային հետ։ Այս պատճառաւ ալ մեր ակնարկին առաջին առարկան պիտի ըլլայ հոս վերջին աշխատասիրութիւնս, զոր պիտի ջանանք ներկայացընել — իւր կարեւորութեան համեմատ — ըստ կարի մանրամասնութեամբ[1]։

[1] Վերջերս հասան մեր ձեռքն նաեւ Հայ իրաւանց համար կարեւոր ուսումնասիրութիւնքս՝ V. Aptowitzer: Beiträge zur mosaischen Rezeption im armenischen Recht (Sitzungsberichte der k. Akad. der Wissenschaften. Phil.-hist. Cl. 157, 4 Abh.) Wien, 1907, 8⁰ pp. 42, եւ նոյն՝ Zur Geschichte des armenischen Rechtes, ի Wiener Zeitschr. f. d. Kunde d. Morgenl. 21 1907), 251—267.

**Ա.**

"Ուրուագիծ հայ իրաւանց պատմութեան"։

Գործն երկու փոքր մասերէ կը բաղկանայ ըստ կրկին բաժանման նիւթոյն՝ Ա. Իրաւանց արտաքին պատմութիւնն. Բ. Իրաւանց ներքին պատմութիւնն։ Համառօտ ներածութիւն մ'առաջին մասին սկիզբն՝ կու տայ "Հայ իրաւանց մատենախօսութիւնն" (p. 2—4), որ նախորդ "Համառօտութիւն" հատուածին հետ (p. 1—2) գեղեցիկ ամբողջութիւն մը կը կազմէ հայ իրաւանց վրայ ճառող գրութեանց. հեղինակին ներկայացուցած այս մատենախօսութիւնս կարելի է ճոխ անուանել, թէեւ չէ անթերի։ Բայց նոյնչափ բաղձալի կատարելութեամբ չէ յաջորդ հատուածն "Հայ իրաւանց աղբիւրներն" (p. 4—5)։ Հետեւեալներն կը նկատէ հեղինակն հայկական իրաւանց աղբիւրներ.

1. Հայ մատենագրութիւնն ընդհանրապէս, մանաւանդ պատմականը որուն ամբողջացուցիչ մասերն են յոյն եւ հռովմէական այն մատենագրութիւնքն, որոնք կը շօշափեն զՀայաստան։

2. Արձանագրութիւնք, կոնդակք եւ նմանիք, որոնք կը ծառայեն գլխաւորաբար հիմնարկութեանց, պարգեւաց եւ հասարակաց իրաւանց հայող իրաց քննութեան, ուր նշանակուած կ'ըլլան ընդհանրապէս պարտաւորութիւնք, դաշնագրութեանց ձեւերն եւն։ Այսպիսի աղբերաց ընտիր հաւաքածոներ են Հ. Ալիշանի տեղագրութիւնքն Շիրակ (Վենետ. 1881), Այրարատ (1890), Սիսական (1893) եւ Սիսուան (1885) նահանգաց։ Այս կարգի հաւաքումներ առատ են այժմ հայ գրականութեան մէջ, բաց ի Ստ. Օրպէլեանի Սիւնեաց աշխարհին պատմութենէն (տպ. Մոսկուա 1860) եւ Langloisի Cartulaireէն, զոր յիշեցինք արդէն, կրնանք մատնանշել դեռ Ս. Վ. Ջալալեանցի, Մ. Վ. Սմբատեանցի, Բարխուդարեանցի եւն տեղագրութիւններն։

3. Կանոններու հաւաքմունք, թէ եկեղեցական եւ թէ աշխարհական օրինաց.

ա. Կանոնք եւ սահմանք ժողովոց,

բ. Ազգային Դատաստանագրքեր, որ երկու կարգի են։ Մեծ Հայաստանի, զոր կը ներկայացընէ Մ. Գօշի Մատեանն. — եւ Կիլիկեան կամ փոքր Հայաստանի, զոր կը կոչենք Սմբատայ Դատաստանագիրք։

4. Այժմեան սովորութեան իրաւունք. այս նկատմամբ աղբերք դժբախտաբար, ինչպէս

կը խոստովանի հեղինակն (p. 5) իրենց մեծ նշանակութեամբն հանդերձ անմատչելի եղած են իրեն։ Ցայտնի է թէ հին Հայաստանի սովորութեան իրաւունքէն շատ բան գրով չէ աւանդուած յետնոցս կամ շատ մութ բացատրութեամբ, որոնց հետքն սակայն — թէեւ փոքր ինչ այլակերպեալ կարելի է այժմ նշմարել անդրէնածին ժողովրդեան քով։ Աշխարհական Հանդէսն, որուն անծանօթ կը ցուցնէ ինքզինքն հեղինակս, առատ ատաղձ կը մատակարարէ այս նկատմամբ եւ շատ բան լուսաւորուած է արդէն խ. Սամուէլեանի մասնագիտական ուսումնասիրութիւններովն, զորոնք նշանակեցինք վերն։ — Հոս վախճան կ'առնու ներածութեան բաժինն, եւ կը բացուի՝

Մասն Ա. Իրաւանց արքունին պատմութիւնն. որուն ամէնէն հետաքրքրական հատուածն է Ա. Արտաքին ընդհանուր զարգացման պատմութիւնն (p. 6—55)։

Կը սկսի հեղինակն իւր նկատողութիւններն ուրարտեան-հայկական շրջանէն, երբ, ինչպէս կը վկայեն բեւեռաձեւ արձանագրութիւնք (Թ դարէն Ն. Ք.), կային մասնաւոր արքայատուր օրէնքներ՝ սահմանուած երկրին բարեկարգութեան համար, որոնց մէջ կը տեսնուին նաեւ պատժական որոշումներ, մահապարտութեան սպառնալիք՝ հրով կամ ընկղմամբ եւն, որոնք կու տան մեր ձեռքն գեղեցիկ կուռան իրաւագիտութեան այս շրջանին մէջ ընդունած զարգացման վրայ կատարելու ենթադրութիւններ։ Բայց դրական օրինադրութեան առաջին յիշատակութիւնն Արշակունեաց հարստութեան ժամանակ կը գտնէ հեղինակն՝ հետեւելով Մովսէս Խորենացւոյ ակնարկութեանց (Խոր. Ա. Ը. եւն), որոնց համեմատ Վաղարշակ Ա. (148—127 Ն. Ք.) սահմանած է մասնաւոր օրէնքներ արքունիքի, նախարարաց եւ ժողովրդեան յարաբերութեանց մասին եւն (p. 6—8)։ Նոյն պատմագիրն թէեւ ուրիշ արշակունի թագաւորաց համար ալ կը պատմէ թէ տուած են այլ եւ այլ օրէնքներ, սակայն այսպիսի ակնարկութիւնք աւելի ինչ ինչ գաւառաց համար միայն առանձնական կարգադրութիւններ լաւագոյն է իմանալ — եթէ կասկածելի պատմագրին խօսքերուն պէտք է հաւատալ։

Որչափ ալ տկար ըլլան մեր ձեռքն այս շրջանի դրական օրինաց մասին տեղեկութիւնք, համեմատական իրաւագիտութիւնն կը պարզէ շատ բան երկրին վարչական դրութեան նկատմամբ։ Գիտենք որ հզօր էր այս շրջանին երկրին նախարարութիւնն, եւ մէն մի նահանգ ինքնօրէն աղիկամի էր՝ թոյլ արտաքին կապերով միայն կապուած արքունիքի հետ. թագաւորական իշխանութիւնն երկրին ընդհանուր վարչութիւնն միայն կ'ընդգրկէր, այն կէտերն, որոնք միապետութեան կամ երկրին սահմանին վնաս սպառնալ կրնային։ Այսպիսի դրից մէջ բնականաբար իւրաքանչիւր նահանգ իրեն սեպհական քաղաքական-իրաւագիտական կազմակերպութիւնն ունէր, կ'ընթանար այն կարգի եւ կանոնի համեմատ, որ աւանդուած էր իրեն նախնիքներէն, միով բանիւ սովորութիւնն էր միմիակ օրինագիրքն նախարարաց եւ դատաւորաց ձեռքն։ Միջոց մը, զոր շատ ճշգութեամբ կը կոչէ հեղինակն Շրջան սովորութական իրաւանց։ Նահանգաց պէսպիսութեան համեմատ պէսպէս էին իրաւագիտական սովորութիւնք, այս հանգամանքն անհնարին կ'ընէր դատաւորի միութիւնն իրաւանց խնդիրներու մէջ. եւ երկրի այս վիճակն երբ նկատուէր դրացի քաղաքակիրթ եւ իրաւագէտ ժողովրդենէ, բնական էր որ պիտի երեւար կատարեալ օրինազուրկ երկիր, ինչպէս արդեամբք ալ անուանեց զայն Յուստինիանոս 534ին Հայոց ժառանգական իրաւանց մասին տուած հրովարտակին (Novella) մէջ։ Մտադրութեան արժանի են այս նկատմամբ Յակոբ Եդեսացւոյն խօսքերն. "Հայաստանի ժողովուրդն աշխարհքիս սկզբէն ի վեր առանց օրէնքի ապրած է[1]" (p. 6—8)։

Ազգային սովորութեան իրաւունքներն միշտ անխառն չմնացին սակայն. պարթեւական տիրապետութեան ժամանակ (66 Ն. Ք. —429) սկսան մուտ գտնել օտար օրէնքներ ալ. արքունեաց մէջ տիրող հասարակաց իրաւունքն մեծաւ մասամբ պարսկական էին. եւ այս օտար ազդեցութիւնն շատ վաղուց իսկ կը գործէր Հայոց վրայ. բազմաթիւ կարգեր, որոնք ժամանակ մը օտար իշխողներէ տրուած էին, յընթացս անցան սովորութեան իրաւանց թուոյն մէջ, մանաւանդ պարսկական տարրը։ Հայաստան Զ դարէն ի վեր (Ն. Ք.) իբրեւ պարսկական սատրապութիւն, անձուկ յարաբերութեան մէջ էր Իրանի հետ, եւ այս աղերսն

---

[1] Այս շրջանի սովորութեան իրաւանց մասին տես մանրագոյնս խ. Սամուէլեանի յօդուածներն Մ. Գօշի Դատաստանագրոց ուսումնասիրութեան առթիւ Հանդ. Ամս. 1907, էջ 135-139, 206—210, նաեւ Բ. Վ. Կիւլէսէրեան՝ Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն, Բ գիրք, գլ. Ա Անդ 1906, էջ 239—44։

կամաց կամաց յառաջ բերաւ հայականան աշխարհին իրանացում մը — ի հարկ է սահմանափակեալ իմաստով, — ազնուականաց եւ տիրող դասակարգի շրջանի մէջ. այս իրանացումն Քրիստոսէ յառաջ արդէն այն աստիճանի յառաջացած էր, որ երկրին բովանդակ յառաջադիմութիւնն եւ քաղաքակրթութիւնը պարսկական ազդեցութեամբն էր. պարսկերէն էր ազնուականաց լեզուն, պարսկերէն այդ դասակարգին անունները, պարսկական վերջապէս զգեստն եւ զէնքն. այսպիսի ազդեցութեան ներքեւ թէ նաեւ իրաւաբանական սովորութիւնք եւ կենցաղավարութիւնն առանց ազդուելու չէին կրնար մնալ արիական հոսանքէն, այն դիւրահասկանալի է: Թէեւ այսպէս սաստիկ եղաւ պարսիկ տարբեր ազդեցութիւնն հայ ազնուականաց վրայ, նոյնն սակայն դժուարաւ կրնար մուտ գտած ըլլալ հայ ժողովրդեան ներքին խաւերու մէջ, եւ արմատ արձակած: Պարսիցմէ ընդունուած օրէնքներն էին եւ մնացին միշտ ազնուականաց իրաւունք եւ ոչ երբեք ժողովրդեան: Օտար իրաւունքն հայ ժողովրդեան կենաց վրայ տեւական եւ խորին ազդեցութիւն ձգեց քրիստոնէական շրջանին սկիզբներն: Գաւառական բնիկ սովորութեանց հակառակ՝ հասարակաց օրէնքով մը կրթուիլն եւ կազմակերպուիլն արդիւնքն է քրիստոնէութեան (p. 9—10): Այս ազդեցութիւնն Հայոց քաղաքական կենաց վրայ զօրեղ եղաւ մանաւանդ երկրին քաղաքական զօրութեան քայքայեալ դրից մէջ գտնուելէն օգտուելով. երկու դրացի հզօր պետութեանց ձեռքն աւատ էր մանաւանդ՝ քան ինքնակաց տէրութիւն. որ աւելի զգալի եղաւ 387ին Սասանեանց եւ Հռովմայեցւոց մէջ կրկին բաժանմամբն, երբ երկրին արեւելեան մեծագոյն բաժինն ինկաւ Պարսից եւ արեւմտեան փոքրագոյնն Հռովմայեցւոց: Հռովմէական Հայաստանի մէջ ի սկզբան արդէն շնչասպառ եղաւ թագաւորութիւնն, իսկ պարսկական բաժնի մէջ թէպէտ ժամանակ մը շարունակուեցաւ, սակայն պարզ յորջորջմամբ միայն, յիրականին աւատ էր Սասանեանց, մինչեւ որ 428/9 Վռամ Ե բոլորովին ջնջեց՝ մարզպանութիւն փոխանակելով տեղը[1]:

Այս եւ յետագայ արաբական ոստիկանութեան շրջաններուն թէպէտ երկրին ընդհանուր վարչութիւնն մարզպանաց կամ ոստիկանաց ձեռքն էր, սակայն մնացին դարձեալ երկրին բնիկ իշխաններն իրենց նախարարութեան սահմաններուն մէջ լիազօր տէր, եւ կ'ընթանային այն իրաւանց համեմատ, որով երբեմն ապրած էին իրենց նախորդք — ի հարկէ ըստ թոյլտուութեան նոր աշխարհակալ տէրերուն: Ցորչափ երկրին քաղաքական միութիւնն օտարադէն տէրերու ձեռքն էր, ազգութեան միութիւնն կը պահպանէին եկեղեցականք: Կաթողիկոսն կը նկատուէր ազգութեան կեդրոնն, եւ այսու կերպով մը նաեւ քաղաքական իշխանութիւնն ստիպուած էր խոնարհիլ անոր առջեւ: Այս իրողութիւնն գեղեցիկ կը պատկերէ Շահապիվանի ժողովոյն Ի կանոնն (հմմտ. այս մասին ընդարձակ հեղինակին Armenisches Rechtsbuch. II, 341—349): Եկեղեցականաց ճոխանալովն՝ յընթացս ընդհանուր նշանակութիւն ստացաւ նաեւ եկեղ. կանոնագիրքը. այն էր այնուհետեւ՝ գրեթէ մի միայն հոգեւորականաց նախագահութեամբ սարքուած դատաստաններու մէջ արժող օրինագիրքը: Կղերականն էր նաեւ իրաւանց միակ պահապանն եւ ուսումնասիրողը: Նշանակալից է այն կէտն, որ Հայոց առաջին օրինագիրքն եղած է սոյն այս եկեղ. կանոնագիրքն, "իւր տեսակին մէջ մեծ գործ մը„ (p. 11): Կանոնագրոց կից է հին ժամանակներէ իսկ մեկնողական ճոխ մատենագրութիւն մը իրաւանց վրայ, վերջապէս Հայոց կանոնագիրքն կ'ընծայէ այն ամէն կանոնական գրութիւններն, որոնք հայ մտքի իրաւաբանական անկախ ծնունդն են: Այս կանոնագիրքն մասամբ ազգային ժողովներու եւ մասամբ անհատականաց կանոններէ կազմուած է, որոնք երկրորդաբար միայն եւ անուղղակի կը շօշափեն ազգային բնիկ սովորութեան իրաւունքն, ընդհանրապէս կառուցուած է շէնքն մովսիսական օրինաց, նաեւ յունական կանոններու (— ասորական միջնորդութեամբ) վրայ, որոնցմէ մինչեւ անգամ ամբողջական կանոնամասեր առնուած են, այսպէս Բարսղի եւն: Այս փոխառութիւնք ճամբայ կը հորդէին հռովմէական եւ մովսիսական օրինաց ապագային ի Հայս մուտ գտնելուն (p. 12): Այսպէս ի Մեծ Հայս:

Յունական բաժնի Հայք ուրիշ պայմաններու մէջ կ'ընթանային: Հոս ալ ի սկզբան բնիկ նախարարք էին — սատրապ յորջորջմամբ — նահանգաց տէրերն, նոյն ազգային սովորութեան իրաւունքով, անկախ հռովմէական

1 Քրիստոնէական ազդեցութեան վրայ հմմտ. S. Weberի գործն Die katholische Kirche in Armenien, ihre Begründung und Entwicklung. Freiburg 1903, 8° pp. XX+532.

օրէնքներէ[1]. բայց յընթացս չափաւորուեցաւ այս ազատութիւնն. Ե դարու վերջերն Զենոնի որոշման համեմատ սատրապք կը կորսէին կայսերական վաւերացման. եւ Զ դարուն Յուստինիանու օրով (528) մուծուեցաւ զինուորական նոր կազմակերպութիւն, երկրին հնագոյն բաժանումն նորով փոխանակուեցաւ, երկրին սովորութեան իրաւանց հակառակ ժառանգական եւն օրէնքներ սահմանուեցան[2], եւ այնուհետեւ մեծաքայլ եւ անընդհատ եղաւ յունական Հայաստանի մէջ հռովմէական իրաւանց ազդեցութիւնն: Ազդեցիկ պիտի ըլլար հռովմէական օրէնքն մեծ Հայաստանի մէջ ալ, եթէ սասանեանց քաղաքականութիւնն արգելք չըլլար, որուն շահերուն կը հակառակէր այն: Բայց երբ արգելքն հարթուեցաւ արաբական տիրապետութեան[3] ժամանակ (654—859), սկսաւ կամաց կամաց թափանցել հոն ալ, որ զգալի է գլխաւորաբար Բագրատունեաց հարստութեան[4] միջոցին (887—1042 կամ 1045): Հեղինակն զայս կ'ենթադրէ՝ նկատելով Մ. Գօշի Դատաստանագրոց մէջ յունական օրինաց հետքեր. բնական էր, կը գրէ, որ երբեմն բիւզանդական իրաւունքով կառավարուած աշխարհ մը շարունակէր իւր դատաստաններն նոյն իրաւունքի համաձայն — ապագայ շրջանի մէջ ալ: Այս, ինչպէս եւ յետագայ կարծեաց մէջ դժուարաւ կրնանք միաբանիլ Հեղինակին հետ. նա կ'ենթադրէ այս շրջանին մինչեւ անգամ բիւզանդական օրինաց համառօտութիւններ կամ յունական օրինաց մասնական հայերէն թարգմանութիւններ կատարուած ըլլալ եւ վաւերացուած: "Այս ենթադրութիւնս գլխաւորաբար այսպէս անուանեալ Ասորա-հռովմէական օրինագրոց համար իմանալու է, որուն ծագումն ըստ ամենայն հաւանականութեան այս առեններս պէտք է դնել. նաեւ իսաւրացի կայսերաց Լեւոնի եւ Կոստանդիանոսի Ընտրութեան (Ecloga) օրինագրոց՝ ըստ մեծի մասին կամ քաղուածօրէն հայ թարգմանութիւնն այս շրջանին հարկ է համարիլ: Հռովմէական տարրը վերջին ժամանակաց դատաստանագրոց մէջ այնպէս կարեւոր տեղ կը գրաւէ եւ հաստատուն արմատ արձակած կ'երեւայ, որ արդէն իսկ ենթադրել կու տայ երկարագոյն շրջան մը, երբ գործածութեամբն ընդունուած է": Այլ այս՝ ենթադրութիւն կը մնայ միշտ եւ տակաւին լուծուած չ'ըլլար այն պարագան որ Ներսէս Լամբրոնացի եւ Մխիթար այնպիսի քաղուածոյքի մը անծանօթ են ամենեւին, թէեւ հեղինակն կը ջանայ լուծել նոյնին սահմանափակ արժէք ընծայելով կամ՝ վերջէն գործածութենէն թողուած համարելով (p. 16): Տկար են նմանապէս Մխիթարայ Դատաստանագրոց բովանդակութենէն ի մէջ բերած ապացոյցներն:

Հռովմէական իրաւանց Հայաստանի մէջ մուտ գտնելէն յառաջ մուտ գտած էր մովսիսական օրէնքն, որ մասամբ ասորական-կանոնական, մասամբ թալմուտական, թերեւս նաեւ մահմեդական աղբիւրներու միջնորդութեամբ, կ'երեւայ թէ ծանրակշիռ նշանակութիւն ստացած է արեւելեան պարսկական-հայկական աշխարհին համար, այնու որ այս սահմանին համար, ուսկից հռովմէական օրէնքն մարզպանութեան շրջանին մէջ արմատաքի խլուած էր, Յունաց հակառակորդ Պարսից քաղաքականութիւնն անոր համարժէք կը ջանար արժեցընել. մինչդեռ այսպէս չէր արեւմտեան Հայաստանի մէջ, ուր հազիւ վերջերն իբրեւ յաւելուած բիւզանդական Ընտրութեան օրինաց կը տեսնուին քաղուածօրէն թարգմանութիւն Ելից եւ Երկ. օրինաց մատեաններէն: Թալմուտական մեկնութեանց այս մուտն հայ իրաւանց մէջ առաջին անգամ Մխիթար Գօշի քով յերեւան կ'ելլէ, որ ըստ հեղինակին՝ աւելի մահմեդական ճամբով ազդած է հայ իրաւանց վրայ, քան ուղղակի. եւ արդէն Մխիթար կը յիշէ իւր աղբերաց թուին մէջ նաեւ մահմեդական աղբիւր: Թալմուտական ազդեցութիւնն հայ իրաւանց վրայ յատուկ հետազօտութեան նիւթ ըրած են D. Müller եւ V. Aptowitzer, որոնց եզրակացութեանց կը ծանօթանանք ի կարգին:

Բագրատունեաց հարստութեան ժամանակ ծագած կ'երեւայ "Օրէնք թագաւորաց" օրինագիրքն, որ կը կազմէ Մխիթարայ Գօշի

---

1) Այս կողման իրաւագիտական շարժմանց համար տես Güterbockի ուսումնասիրութիւնն Römisch-Armenien եւն:

2) Յուստինիանու Հայոց տուած օրինաց թարգմանութիւնն ըրած է Ն. Յարոյ իւր յիշեալ յօդուածին մէջ Թէոդոս Մեծի օրէնքներու հետ (Լումայ, 1902):

3) Կարեւոր ուսումնասիրութիւն է այս շրջանի համար M. Ghazarian: Armenien unter der arabischen Herrschaft bis zur Entstehung des Bagratidenreiches. Marburg 1903, 8° pp. 87 (նախ Z. für Arm. Philologie, II, Nr. 2, 3) Հմմտ. եւ H. Thopdschian: Armenien vor und während der Araberzeit, ZAPh. II (1904) p. 50–71:

4) Գեղեցիկ կը պատկերէ Բագրատունեաց թագաւորութեան հանգամանքներն H. Thopdschian ի գիրս Die inneren Zustände von Armenien unter Ašot I., Halle 1904, 8° pp. 52. Հմմտ. եւ նոյն հեղինակին գործս. Politische und Kirchengeschichte Armeniens unter Ašot I. und Smbat I., Berlin 1905, 8° pp. 98–215.

Դատաստանագրոց Բ մասին՝ "Աշխարհական օրինաց„ Ա գլուխն "Յաղագս դատաստանաց Թագաւորաց եւ որք ընդ ձեռամբ նոցա„ (էջ 299—319)։ Թէ այս օրէնքներն յօրինուած են այնպիսի շրջանի մը մէջ, երբ կային ի Հայս Թագաւորներ, այն կը հետեւի ըստ Հեղինակին՝ օրինաց խորագրէն, ուր ոչ թէ բովանդակութիւնն կ'ակնարկուի, այլ օրինադիրն. վասն զի եթէ հաւաքչին ընծայուի այն, անըմբռնելի պիտի ըլլայ այնուհետեւ թէ՛ խորագիրն եւ թէ՛ բովանդակութիւնն։ Հաւաքիչն կը գրէ այնպիսի սարկութեան ժամանակ մը, երբ անտեղի է մտածել Թագաւոր, ինչպէս իրաւամբ ալ ծիծաղական կը համարի օրինացս գոյութիւնն Հայոց Դատաստանագրոց մէջ Էջմիածնի 489 եւ Վենետիկի օրինակներուն յիշատակարանի գրիչն իւր ժամանակն, երբ չկար Թագաւորութիւն (հմմտ. Մ. Գոշ. էջ 319 ծն.)։ Ըստ այսմ այս օրինագիրքն առանց երկբայութեան յօրինուած ըլլալու է, կ'ըսէ, Բագրատունեաց Թագաւորութեան ժամանակ։ Համոզեցուցիչ չեն առ այս իւր ապացոյցք (p. 18—19)։ Մխիթար ձեռնարկած էր ամբողջական Դատաստանագիրք, որ պիտի յարմարէր ազգին թէ ներկայ եւ թէ ապագայ հանգամանաց. խորագիրն, որուն վրայ հիմնուած ենթադրութիւններ կ'ընէ Հեղինակն, չունի ամենեւին ակնարկութիւն օրինադրի, եւ արդէն բովանդակ չինուածն անագանագոյն շրջանի ճարտարապետ մը կը մատնանշէ։

Բագրատունեաց պետութեան յաջորդող անտէրնչութեան շրջանին երկրին լծուադրութեան հետ անպաշտպանութեան մէջ էր նաեւ իրաւունքն, մատնուած ամենազգի բռնաբարութեանց Թաթարաց եւ Թուրքաց կողմանէ։ Ընդհանուր ներքին վարչութիւնն կ'ընթանար ընկալեալ օրինաց համեմատ, որ մէկ կողմանէ բիւզանդական-հռովմէական եւ մովսիսական-կանոնական եւ միւս կողմանէ ազգային բնիկ սովորութեան իրաւանց ձուլումն էր. օրէնքներն յընդհանուրն միութենական նկարագիր ունէին թէեւ, բայց կային նաեւ ի մասնականին տարբերութիւններ ըստ նահանգաց եւ գաւառաց։ Այս տարբերութիւնքն կը շեշտուին մինչեւ անգամ Դատաստանագրոց մէջ (հմմտ. Բ. 127, 122, 121 եւն). որոնք սակայն. ինչպէս կը դիտէ հեղինակն (p. 20 ծն.) երկրորդական միայն եւ ոչ էական եղանակաւորումներ էին։

(Շարունակելի։) Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

## ԵՂԻՇԷ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

### ԳԼՈՒԽ Դ.

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԻՒՆԸ ՉՈՐՐՈՐԴ ԴԱՐՈՒՆ

Հայոց լուսաւորութեան բոլոր պատմութիւններն (աւանդական) քիչ մը ջատագովական են. որովհետեւ ոչ միայն մթին է Հայ-քրիստոնէութեան վիճակը Լուսաւորիչը Առաքեալներէն անջրպետող ժամանակամիջոցին մէջ, այլ՝ Լուսաւորչէն յետոյ ալ Քրիստոնէութեան փառապանծ յառաջացումը դիտելէ վերջ, դեռ հեթանոսութիւնը արմատացած կը գտնենք Գողթան եւ Սիւնեաց երկիրները (Խորէն. Խոր)։ Հայաստանը, յիրաւի, շատ լաւ քրիստոնեայ երկիր մ'եղաւ, բայց շատ դժուար եղաւ։ Այս հայեացքով կ'ուզենք դիտել Դրդ դարը, Երդին ուղղակի ոստում մ'ըրած չըլլալու համար։

Երդ դարը հազիւ շունչ կ'առնէր երբ Քրիստոնէութիւնը (ընդհանուր) հետզհետէ հարուածող Տասը հալածանքներէն (54—311) յետոյ Մեծն Կոստանդիանոսի արձանը կանգնեցաւ Հռովմի դռներուն մօտ. դարագլուխ մ'էր այդ, յորում Եկեղեցին զէնքը ճնշող արտաքին թշնամիներու արհաւիրքը փարատելէ զատ ոչ նուազ վտանգաւոր ներքին թշնամիներու յառաջացումը կը ջլատէր եւ քրիստոնէական վարդապետութիւնը դաւանանքի պաշտօնական բանաձեւերու կամ հանգանակներու մէջ կը կաղապարէր իւր Տիեզերական Ժողովներով։ Իրաց այս ելքը, որ կրօնական, քաղաքական մեծ յեղափոխութիւններու կը հետեւի, դեռ առաջին քայլ մ'է, սկիզբ մ'է այն արագ բարգաւաճումին, զոր Քրիստոնէութիւնը պիտի ունենար նախ տիեզերական եւ յետոյ ազգային եկեղեցիներու մէջ։

Մեր Եկեղեցին դիւրին չմտաւ այդ բարգաւաճումի շաւղին մէջ, թէեւ հազիւ վրդովուած կը նկարագրուի մեզ այն սարսափելի տագնապներէն, որք բնական օրէնքով կը տաքնան, կը պայթին երկու հակառակ ոյժերու ընդհարումով թէ՛ կրօնական ըլլան ատոնք, թէ՛ քաղաքական։ Հայաստանի հին հեթանոսութեան յուսահատ ճիգերուն եւ նորածագ քրիստոնէութեան եռանդնոտ վայրկեաններուն այնքան զօրաւոր բաղխումը Ագաթանգեղոս կամ Զենոբ հազիւ իբր հասարակ ընդհարում մը կը ջանան ցուցընել՝ քրիստոնէութեան ջատագովութիւն մ'ընելու նախանձախնդիր ոգւով։ Եւ Բուզանդ, որ դարուն ամենէն կարեւոր մի շրջանին (342—382) դէպքերը կը պատմագրէ, կողմնակի փայլուն գոյն մը կու տայ Հայաստանի քրիստոնէութեան. ուրիշ խօսքով՝ եկեղեցւոյ եւ հայրապետանոցի վերաբերող բոլոր անձնաւորութիւններ, իրողութիւններ կը ջատա-

*շուած բառին ուղիղ լուսաբանութեանը՝ դարձեալ մեզ համար վարձք մ'է։*

### ԺԵ

*«Հօրօզդօօղլուղ» բառը զոր հմտօրէն կը թարգմանէք «շնորհալիութիւն, մարդու շահելու ընդունակութիւն» իմաստով (էջ 119), շատ գործածական բառ մ'է մեր բարբառին մէջ. — «Հօրօզդի մարդ հալւով չեն ճանչնար» կ'ըսեն, որու իմաստն այս է թէ՝ անձնապէս, նկարագրով, ցեղային պատւով ծանօթ մարդը ցնցոտիներ իսկ հագած ըլլայ՝ կը յարգուի։ Պարկեշտ, ուղղընթաց, պատուաւոր, մաքուր կաթի տէր մարդուն՝ հօրօզդլի կ'ըսեն եւ այս բնական շնորհներն ունենալուն՝ հօրօզդօօղլուղ։*

### ԺԶ.

Էջ 119—122 *կը քննէք մանրամասնօրէն՝ Շափանոկ բառը, որուն ուղիղը կը կարծէք որ ըլլայ Շահդանոկ ըստ Քերթողահօր Աշխարհագրութեան։ Գուցէ աւելորդ չըլլայ յիշել Շաղդանա բառը մեր գաւառաբարբառէն, եւ կարենայ լուսաբանող կէտ մ'ըլլալ Ձեր խորաթափանց մտքին ու գրչին։ Շաղդանա՝ մասի ուռենքի տեսակ մ'է, որ մաքսուրէն աւելի վտանգաւոր եւ ցաւոտ է։ Շաղդանա եղած ուռենքը մառը կը կապուտկեցնէ եւ կարծեմ թէ քրդերէն՝ կապոյտ (մօռ) նշանակութիւնն ունի Շաղդանա բառը։ Կատանայի կամ Մաշկամիրդի պտուղն ալ իր կեղեւի գոյնովը կրնայ նմանութիւն տուած ըլլալ Շաղդանա մառուռենքին։*

### ԺԷ.

Երբ 123, *Տէող բառին ստոյգ նշանակութիւնը կը կարծէք ըլլայ՝ «խեցեմորթներու, ոստրէներու, գաղտակրերու խեցին կամ պատեանը», — խեփոր։ Թէպէտ Ձեր բերած վկայութիւններն ինքնին բացայայտ են եւ իրաւունք տուած Ձեզի, նորէն աւելորդ չըլլայ թերեւս՝ հոս մեր բարբառին յատուկ նշանակութեամբ ծանօթ Տօօֆին յիշատակութիւնը։ Ծիրանին դեղին պտուղը բանալով մէջի կորիզը հանելէ եւ արեւին դէմ թեթեւ մը չորցնելէ վերջ քաղցր կողինձ (ծիրանի կուտ) մը մէջ դնելով գոցուած եւ այս անգամ լաւ մ'ի չորացուած տրուած չիրին՝ թօօֆ անունը կու տանք։ Տօօֆ կամ Տէող կամ Տէֆ կը նշանակեն բօշօօղ խէֆօօղ պատեան, խեփոր։*

### ԺԸ.

*Քէրթէշ, Քէրթէշէլ, Քէրթէշտէլ բառերը* (էջ 124—126) *կատարելապէս ուղիղ բացատրուած են Ձեր կողմէ։ Այս կողմերու գաւառաբարբառին մէջ ալ Քօթշէլ, Քօթէօշ, Քօթէօշէլ, Քօթէօշէլ բառերը կը գործածուին ալիւր, թեփոտած մէրքերու, մորթային ախտէ վարակուած մարմնոյ, վերջապէս ուղէկօօլըլը կօրօօշ, խօրթօօքօրթ կենդանական կաշիի համար։ Երբ տախտակի վրայ՝ եռացած ջուր թափի, այնպէս որ տախտակին երեսը կուռնճմոի, խորշոմի՝ դարձեալ կ'ըսեն Քօթէօշօօ (քերքեշաւ)։ Այդ ալ տեսակ մը կեղ, քոս է տախտակին համար.*

*Քէրթէշէլ բառին ստուգաբանութիւնն ալ ինծի կ'երեւի թէ իր մէջն է. գուցէ ըլլայ քէր, քէրօօքէլ եւ քօշօօքէլ, քաշ(ուիլ)-ը ստորին հայերէնի մէջ քէշ կը հնչուի արդէն. ինչպէս — քէշեց իպի (քաշեց բերաւ). քէշեց տարաւ եւն։ Համանիշ տարբեր բառախումբ մ'ալ է՝ Քըշքշէլ, քըշքշօօք. «մորթի՝ մանր բշտիկներով ծածկուիլ» նշանակութեամբ, եւ Քըշքշուլ՝ «վրան բարկ քացախ թափած հողի՝ եռալ, պղպջալ»ուն յատուկ։*

*Վահան վրդ. Բաստամեանցի տուած վկայութեանն* (էջ 125—126) *իբր նոր զօրաւոր վկայութիւն մը թող ըլլայ մեր բարբառին այս բառախումբը, Քէրթէշէլ եւ համարմատ ածանցաւորներուն համար։*

* * *

*Հարեւանցի ընթերցումի մը վազքին մէջ այսչափ մը միայն աչքիս հանդիպած ու գրչիս տակ նիշուած դիտողութիւններուս փունջը Ձեզի, եւ Ձեզմով՝ միւս հետաքրքիր բանասէրներուն ուշադրութեանը մատուցանելուս շարժառիթն ուրիշ բան չէ՝ եթէ ոչ պարտադիր նախանձախնդրութիւն մը՝ ուղղուած տեսնելու մեր հոգեշնորհ նախնեաց պատուական գրչի վաստակոց մէջ սպրդած անուղղութիւնները։ Եւ առ այդ իմ համեստ սահմանիս մէջ հայթայթել կրցած լուսաբանական տաղձներով օգտակարութեան բաժին մ'ունեցած ըլլալը, եթէ կարելի է՝ վարձք մ'է ինձ համար։*

*Կանխաւ ապաւինած Ձեր բարեացակամ վերաբերումին, մնամ խոնարհաբար՝*

*ՏԻԳՐԱՆ ՉԻԹՃԵԱՆ*

## ԻՐԱՒԱԳԻՏԱԿԱՆ

## ԱԿՆԱՐԿ ՄԸ ՀԱՅ ԻՐԱՒԱՆՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ ԵՒ Ե. ԿԱՐԱՊԵՏԻ ՆՈՐ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

### 2.

(Շարունակութիւն)։

*Ցորչափ թագաւորութիւնն կը տեւէր, գրաւոր Օրէնագրքի մը պէտքն չէր զգացուած տակաւին. վասն զի կանոնաւոր քաղաքական հանգամանաց եւ հզօր պետութեան մէջ կարելի էր նաեւ սովորութեան իրաւունքով վարել դատաստան. բայց երբ բարձուեցաւ Բագրատունեաց թագաւորութիւնն եւ երկրին քաղաքական դրութիւնն բարբարոս աշխարհակալներու ձեռքն անցած՝ ամենայն ինչ ըստ հաճոյս կ'ընթանար, զգալի եղաւ գրաւոր Օրէնագրոց պէտքն, այս պակասութիւնն բարւոքել փորձուեցաւ՝*

1. Մեծ Հայաստանի մէջ Մխիթար Գօշի Դատաստանագրքով՝ յամի 1184։ Դատաստանագրոցս յօրինման գլխաւոր շարժառիթներն եղած են, ինչպէս կը ծանուցուի մատենին Նախադրութեան մէջ, անհաւատներու եւ բնիկ ժողովրդեան գանգատն Դատաստանագրքի մը չգոյութեան նկատմամբ, եւ ասկէ ծագած թիւրիմացութիւնք։ Մխիթար ձեռնարկած է իւր գործն ընդարձակ ծրագրով. իւր Դատաստանագիրքն ընդգրկած է թէ Եկեղեցական եւ թէ աշխարհական իրաւունքն։ Աւելորդ չէ առ այս իւր գործածած աղբիւրներն եւ այն եղանակն, որուն հետեւած է ի մէջ բերել հոս գրոց սկիզբն դրած Նախադրութենէն (Գլ. Ժ. էջ 64—65)։

"Եթէ յարո՞ց գրոց կամ յորո՞ց ազգաց պարտ է հաւաքել զիրս դատաստանի, որով ժողովի ճշմարտութիւնն մեր. եւ թէ ո՞րպէս պարունակի գիրս դատաստանի.

Հանդերձեալ մեր գրով դրոշմել զիրս դատաստանի՝ պարտ է ցուցանել թէ յորո՞ց գրոց կամ յորո՞ց ազգաց հաւաքեմք զսա, զի ճշմարտութիւնն յայտնեսցի եւ մի՛ ոք գայթակղեսցի թէ մեք մերովք մտացածին բանիւք գրեմք զսա։

Առաջին՝ հաւատարիմ համարիմք ի բնաւորական օրինացն առնուլ, զոր ունէին նահապետքն Աբրահամ եւ այլքն առանց գրոյ, զոր ունէին զնոյն եւ հեթանոսք, որով զչնացողս եւ զգողս եւ զսպանողս դատել ուսան։

Երկրորդ՝ առնումք յամենայն ազգաց քրիստոնէից իբրեւ ի հարազատ եղբարց. զոր լուաք եւ տեսաք ի նոսա բարւոք դատաստանս՝ հաւաքեմք ի գիրս։

Այս են ազգքն, յորոց ընտրեմք եւ հաւաքեմք զդատաստանս։ Իսկ ի Գրոց, առաջին՝ յԵլից եւ յԵրկրորդ Օրինացն, եւ յայլ եւս գրոցն, որ է ստոյգ Աստուծոյ օրէնք եւ դատաստանք. զոր եւ ասէ իսկ թէ Այս են օրէնք եւ դատաստանք եւ վկայութիւնք, զոր պատուիրեաց ձեզ Տէր։

Երկրորդ՝ ի կանոնական գրոց. զի եւ անդ ոչ միայն զօրութեամբ գտանի դատաստան, այլ եւ յայտնի դատաստան իսկ ի բազում տեղիս։

Երրորդ՝ առնումք յամենայն Գրոց՝ ի Հին եւ ի Նոր Կտակարանաց, զի ամենայն Գիրք զի՞նչ այլ ինչ են, եթէ ոչ խրատք եւ օրէնք հոգեւոր եւ մարմնաւոր դատաստանի։

Արդ՝ այսպիսի հաւաքումնս յայտնի առնէ զճշմարտութիւնս մեր. զի ոչ թէ մտացածին բանիւք գրեմք զսա, այլ ի Գրոց եւ յազգաց ժողովեմք զսա ի պէտս հաւատացելոց։"

Աղբերաց այս թուարկումն միակողմանի եւ նպատակաւոր կը նկատէ Հեղինակն, այնու որ գլխաւորաբար եւ բացարձակապէս օտար աղբիւրներն մատնանիշ եղած են հոս, մինչ ըստ իւր կարծեաց գոյութիւն ունէին Մխիթարէ յառաջ իսկ բաց ի բնիկ սովորութեան իրաւունքէ նաեւ օտար՝ եկամուտ օրէնքներ, թէեւ բազմաթիւ առաջներու բաժնուած եւ անյարիր իրարու քով կեցած, զորոնք Մխիթար իւր Դատաստանագրոց մէջ ջանացած է միացընել, ձուլել, եւ այն կանոնական նկատումներով։

Թէ սովորութեան իրաւունքն ալ — թէեւ երկրորդաբար — աղբիւր ծառայած է իրեն, ասոր վրայ տարակոյս չի կրնար ըլլալ. Մխիթար վախճան դրած էր իրեն ցրիւ գտնուած բազմապիսի կանոնական գրութիւններէ յօրինուածական միութիւն մը կազմել, բնականաբար իւր այս վախճանին համար շատ նուազ կերպով կրնային ի նկատի առնուիլ բնիկ սովորութիւնք, բայց եթէ երբ կը լռէին գրաւոր աղբերք։ Զայս կը խոստովանի յաճախ եւ ինքն Մխիթար (այսպէս. "Եւ թէ ունէի յաղագս այդոցիկ այլ ինչ ըստ տեսութեան դնել մտաց՝ ոչ կամեցայ, զի մի ընդդէմ ինչ կարծիցիմ կանոնաց, այլ որ ոչ թուին ի կանոնաց, է կենդանի աստ յայնէ" Ա. 109. եւ այլուր "Զայս ըստ սովորութեան ասացաք, զի ոչ է հրաման ի գրոց" Բ. 1.)։ Նա այս բնիկ սովորութեան յարմարցուցած է մինչեւ անգամ օտար աղբերց այն հատուածներն, որոնք ազգային սովորութեան հակառակ կը թուէին։ Եւ Մխիթարայ Դատաստանագրոց մեծագոյն արժէքն ալ յայսմ է. "Մխիթարայ Դատաստանագիրք մեծ գործն, կը գրէ հեղինակն, համերաշխութիւնն է եկամուտ եւ բնիկ իրաւանց իրարու ներհակ խորութեանց, ձուլումն մէկ միութենական մարմնոյ երկու օտարազգի տարերաց" (p. 24)։

2. Փոքր եւ արեւմտեան Հայաստան (Կիլիկիա), որ Յունական ազդեցութեան տակ զարգացած էր, ազգային-հայկական սովորութեանց Դատաստանագրքի մը մէջ կանոնաւոր ամփոփումն դժուարին էր տակաւին. հարկ էր գոհանալ տիրող բիւզանդական օրինօք։ Ճիշդ նոյն ժամանակներն, երբ ի Մեծ Հայս Մխիթար Գօշ իւր Դատաստանագիրքն կը խմբագրէր, ի Կիլիկիա Տարսոնի արքեպիսկոպոսն Ն. Լամբրոնացի կը զբաղէր նորահաստատ ազգային Ռուբենեան թագաւորութեան համար օրինագիրք մը կազմելու, որուն կազմիչ տարերք պիտի ըլլային բիւզանդական եւ ասորա-հռովմէական օրէնքներն։

իւր օրէնստուշութեան գործունէութիւնն այսպէս կը պատմէ Ներսէս Օրինագրոց կցած կրկին յիշատակարանաց մէջ.

„Զայս ծայրաքաղ աւրինադրութիւնքս տառապեալ եպիսկոպոս Տարսոնի թարգմանեցի ի ծերացեալ հելլենացի մատենէ, թուին ՈԽԵ (= 1196) ի նորաշէն ամուրն Լուլուայ, որ է գլուխ դրանն Կիւլիկոսի. զոր ի բազմաժամանակեայ յամայութենէն մարդաբնակ արար մի յեղբարց իմոց Հաննշահ. եւ զկործանեալ շինուածն Յունաց յիսմայելացւոց՝ շինեաց ամրագոյն. եւ ընդարձակեաց նովաւ զՀայաստանեայս՝ թագաւորի Լեւոնի ձեռն, որ ի Կիւլիկեայս եւ Ասորւոց գաւառացն տիրէ. եւ նովաւ կարողացաւ երկրորդ Կապադովկիոյ, յորում մայրաքաղաք Տիանայ. արտահանեալ զնորաշէն ամուրն ի փառս Քրիստոսի եւ ի զաւրութիւն քրիստոնէից։ Դարձայ եւ ի մեծ եկեղեցին Տարսոնի, յղեցի զթարգմանեալն ատտ գրչութեամբ եւ աւանդեցի Հայոց։

Յամս քահանայապետութեան Հայոց Գրիգորի, որ երրորդ էր նախնեացն իւրոց ի Հռոմկլայն, յաջորդ աթոռոյն, թուին ՈԽԲ, յութեւտասներորդ ամի նորին հայրապետութեան, խնդիր եղեւ առ նոյն սրբազանն ի քաղաքաց եւ ի գաւառաց բնակչաց՝ քաղաքական աւրինացն, զի որք իսմայելացւոցն էին իշխանք ի քաղաքս եւ դատաւորք, զդատ Հայաստանեայցս ոչ դատէին, այլ զխնդրողսն իրաւանց՝ առ իւրեանց աւրէնս առաքէին. զի այս էր ի նախագլուխ Մելիքացն հրաման առ դատաւորս քաղաքաց՝ յիւրեանց աւրինացն դատ թողուլ զնոսին։ Եւ եկեալ ոմանք յեկեղեցին՝ հարցանէին աւրէնս ի քահանայից եւ ի քահանայապետաց, ոչ ունէին գիրս որով ընտրեսցեն զիրաւունս. զոր եւ այլոց ազգաց տեսանէին՝ քրիստոնէից եւ մոլիմանաց. այս ինքն Հռոմայեցւոց, Հելլենացոց, Ասորոց, Եգիպտացոց, Արաբացոց, Պարսից եւ այժմու իշխողացս Թուրքաց։ Ի խնդիր եկին ապա առ հայրապետս ի Հայաստանեայց՝ արթունք, կղերիկոսք եւ աշխարհականք. խեթկեալք յայլոց ազգաց եւ նախանձեալք զբարուօքն, եւ խուզեալք ընդ նա մեր յարկեղս գրոց կաթուղիկոսարանին՝ ոչ գտաք աւրէն, բայց միայն զկանոնականս՝ որ ի սուրբ հարցն ժողովելոց էր գրեալ եւ որ ի նոյն յարեցաւ ի նուցանէ կանոնս զգուշաւորս եկեղեցւոյ։ Իսկ քաղաքի աւրէնս ոչ գտաւ ի մէջ Հայոց, ոչ յեկեղեցիս եւ ոչ առ իշխանս։ Եւ կարի վշտացեալ հայրապետն խնդիր առնէր առ այլ ազգս. եւ պատահեալ անդ յասորոց Թէոդոս անուն կիրթ յիմաստութեան քահանայ, յայտնեաց տեառնս զի գոյր առ ինքն այս համառաւտ աւրինադրութիւնս, եւ հրաման տուեալ ինձ տառապեալ իւր ձեռնասուն որդւոյ Ներսիսի յեղաշրջեցաւ ի հայս, նմին յիշատակ բարի, եւ զկնի եկելոցդ ուղղութիւն ընթացից։ Յետ որոյ ապա եւ ի հելլենացւոց գրոց արարի թարգմանութիւն մովսիսական աւրինացդ եւ Լէոնի եւ Կոստանդեայ աւրինացդ, ի նմանէ թարգմանեցի եւ զզինուորական աւրէնքդ. եւ ընծայեցի որոց սիրեն վարիլ սովաւ եւ հաճոյ գտանիլ Աստուծոյ, եւ կառավարիչք քաղաքաց եւ գաւառաց[1]։„

Թէ Լամբրոնացւոյ այս տողերն բովանդակ բիւզանդական-հռովմէական օրինագրոց թարգմանութեան մասին են, հեղինակն հաւանական չի կարծեր. այդ օրինագրոց ինչ ինչ մասերն աւելի կանուխ հայացուած կ'ենթադրէ, զոր. օր. Ասորա-Հռովմէական օրինագիրքն ևն, մերժելով հանդերձ Պետերմանի եւ Սախաուի կարծիքներն, որոնք զՄխիթար Գօշ կամ իւր աշակերտներէն մին կը համարին Ասորա-Հռովմէական օրինագրոց թարգմանիչն (տես Syr.-Röm. Rechtsbuch, p. 163). եւ Huberի (Zur Beleuchtung etc. p. 17) եւ Leistի (Altarisches jus gentium, 1889, p. 48) ենթադրութիւններն թէ Մխիթարայ դատաստանագիրքն, Ասորա-Հռովմէական եւ նման օրինագրքերն մէկ ձեռաց արդիւնք ըլլան (p. 27—28)։ Ըստ մեզ ուղղագոյն է կարծել թէ Ն. Լամբրոնացին է ամէնուն թարգմանիչն, ինչպէս ինքն կը խոստովանի՝ մասամբ ասորերէնէ եւ մասամբ յունարէնէ։ Առաջնէն է առանց տարակուսի Ասորա-Հռովմէական օրինագրոց թարգմանութիւնն — օգնականութեամբ Թէոդոսի նշանաւոր ասորի հեղինակի. եւ արդէն գիտնականն Սախաու նկատած է հայ թարգմանու-

---

[1] Հրտ. Նախ Հայաստան 1847. Թ. 63, ապա Մատենադարան Հայկ. թարգմանութեանց. էջ 754—5. այժմ նոյն Վենետիկի Օրինակէն նաեւ Բասմաջեան՝ Քաղաքաց օրէնք Ն. Լամբրոնացւոյ, էջ 4-5։ — Գերմաներէն թարգմանած է այս մասն ամբողջապէս Կարստ էջ 25—27։ Անշուշտ յանիրաւի չէր Հ. Ալիշանի կասկածն Յիշատակարանացս անհարազատութեան մասին (ԲԶՄ. 1848, էջ 43—4). ՈԽԲ (1193) թուականին ԺԸ տարի հայրապետութիւն ընող Գրիգոր անուն կաթողիկոս չկար ի Հռոմկլայ. յիրաւի Ներսէս "ձեռնասուն որդին„ էր Գրիգոր Դ Տղայ կաթողիկոսի, բայց սա վախճանած էր արդէն 1192ին (ՈԽԱ), 20 տարի նստելէ յետոյ հայրապետական աթոռն. յաջորդն Գրիգոր Ե Գահավէժն վախճանած էր մէկ ու կէս տարի կառավարելէ յետոյ. ՈԽԵ թուին (1196) կաթողիկոս էր Գրիգոր Զ Ապիրատ։

թեանս մէջ ասորերէն բնագրի մը հետքերն՝ կատարուած իբր 1200ին (տես Syr.-Röm. Rechtsbuch, p. 164)։ — Հեղինակն հոս ի մէջ կը բերէ Ներսէսի Օրինագրոց բովանդակութիւնն Վենետիկի 1223 Ձեռագրին համեմատ, որ ամենէն հնագոյնն կը ներկայանայ ծանօթ ձեռագրաց մէջ, եւ որուն ստացիչն է Պարոն Օշին։ Ձեռագրին բովանդակութիւնն նոյն է մեր Մատենադարանի Թ. 579 (ԺԸ դարէ) եւ Թ. 581 (յամէ 1663) Ձեռագրաց հետ, կարգով միայն տարբեր. ըստ մեր Ձեռագրաց կը դնենք հոս խորագիրներն հետեւելով Վենետիկեան Ձեռ. կարգին, իսկ մերինին կարգն Ա. Բ. եւն գրերով նշանակելով։

1. "Աւրէնք աստուածագիրք ի ձեռն Մովսիսի յԵլից գրոցն" եւ "Կանոն յՂեւտական գրոց" (Գ)։ Այս մասն ապահովապէս յոյն բնագրէ մը բղխած է։

2. "Ընտրութիւն (ἐκλογή = ecloga) հաւատոյ աւրինացն քաղաքականացն Լեւոնի եւ Կոստանդեայ իմաստուն եւ բարեպաշտ թագաւորացն, զոր եւ մեծն Յուստինանոս նորոգեաց զկարգն ուղղեալ ի բարեպաշտութիւն" (Դ)։ Այս մասէն յառաջ դրուած է "Ամենիմաստ թագաւորացն Հռովմայեցւոց աւրինադրութիւն", որ գլխոց ցանկ մ'է յաջորդ "Ընտրութեան օրինաց"։ Այս ցանկն նոյն է Monferratի հրատարակածին հետ բայց ոչ "Ընտրութիւնն", որ 19 տիտղոսներով՝ Monferratի հրատարակած աշխարհաբար բնագրէն խմբագրութիւն մ'է մասամբ կարեւոր տարբերութիւններով։ ԺԹ տիտղոսին կցուած է վեց հատուած իբրեւ յաւելուած "Ընտրութեան օրինաց", որոնք Monferratի հրատարակութենէն կը շեղին նոյնպէս մեծ փոփոխութիւններով եւ յապաւումներով (հմմտ. p. 28)։

3. "Աւրինադրութիւն Եռինեայ թագուհւոյ (797—802) մօր Կոստանդեայ վասն զգուշանալոյ երդմանց ըստ պատուական Տեառն հրամանի" (Ե)։

4. "Յօրինացն Յուստինիանոսի գլուխ ԲԺ, վասն պատուելոյ թագաւորացն եւ իշխանացն զկանոնս եկեղեցւոյ եւ զօրս ի նոսա զսահմանադրութիւնն" (Զ)։ Ընդ ամէնն վեց հատուած՝ հանուած Յուստինիանու Օրինագրքէն (Novella 83 եւ 123)։

5. Ասորա-հռովմէական օրինագիրքն, որ երկու մասով է. ա. "Թիւք կանոնաց, որքանութեան գրոցս Նոմոսի, բ. Աւրէնք յաղթող թագաւորացն Կոստանդիանոսի, Թէոդոսի եւ Լեւոնի" (Ա)[1]։

6. "Համառօտ ժողովումն աւրինաց վերըստին" (Բ)։ Այս մասն 85 գլխով քաղուածոյք մ'է յոյն-հռովմէական օրինաց, հաւանականաբար ասորական միջնորդութեամբ, որուն սակայն համապատասխան բնագիր մը տակաւին չէ գտնուած (հմմտ. p. 29)։ — Հրտ. Բասմաջեան՝ ԲՆՍ. 1907, էջ 14—18։

7. "Սահման զինուորութեան եւ ահարկութեան ի քաղաքական աւրինացն եւ կարգէ հաստատութեան". գլխոց ցանկն պարզապէս "վասն զինուորաց սահմանադրութիւն" խորագրով (Է)։ Բնագիրն ամբողջութեամբ հրատարակած է Կ. Յ. Բասմաջեան ի ԲՆՍ. 1902, էջ 321—28. մեր ձեռագրին մէջ (Թ. 579) ըստ ցանկին կը բովանդակէ հատուածս 57 գլուխ, թէեւ ի մէջ բերուած է միայն ԾԵ օրէնք՝ ԾԶէն սկսեալ շփոթութիւն ծագելով։ Monferratի հրատարակութեան մէջ երրորդ յաւելուածն կը կազմէ այս "Ընտրութեան օրինաց"։ H. Goussen իւր մատենախօսութեան մէջ (Theologische Revue **3** [1904] p. 259—260) կը կցէ դիտողութիւնս. ի սկզբան կը համընթանայ Z. von Lingethalէ ի Byz. Zeitschrift **3** (1894) p. 450—53 հրատարակուած յոյն բնագրին հետ, բայց յընթացս կը խոտորի մերթ ընդ մերթ, դարձեալ հայերէնն ունի 57 կանոն, մինչ յունարէնն 41 է։

8. "Վասն աստիճանաց ազգականութեան", որ ըստ հեղինակին Prochiron auctum անուանեալ օրինագրոց (տպ. Z. von Lingenthal, Geschichte des griechisch-römischen Rechts. Գ. տպ. 1892, VI) Ի տիտղոսին աղճատեալ խմբագրութիւնն է, բովանդակութեամբն ազգակից Monferratի հրտ. Eclogaի Ի յաւելուածին։ Վերջինս կը պակսի մեր Ձեռագրաց (Թ. 579, 581) մէջ։

Հռովմէական օրինագրոց բոլոր այս հայերէն թարգմանուած մասերն կը վերաբերին բիւզանդական միջին շրջանին, հին շրջանին

[1] Այս եւ յետագայ (6) մասանց ընտիր օրինակ մ'ըստ երեւութին կը ներկայացընէ մեր Թ. 582 Ձեռագիրն՝ 1230ին օրինակուած գրչագրէ մը գաղափարուած՝ թէեւ ԺԹ դարուն։ Հայերէն գերմ. թարգմանութեամբ հրտ. ի գիրս Syrisch-römisches Rechtsbuch (տես վերը), pp. 95—141 եւ II, 115—150։ — Նորերս Պարիսի Suppl. Arm. Nr. 103էն (ԺԹ դարէն) հրատարակեց նաեւ Կ. Յ. Բասմաջեան՝ "Քաղաքային օրէնք Ներսէսի Լամբրոնացւոյ ըստ Կոստանդիանոսի, Թէոդոսի եւ Լեւոնի թագաւորաց Հռովմայեցւոց". Պարիս 1907, 8° էջք 43։

օրինագրոց յայտնի հետքեր չեն նշմարուիր բնաւ. անհիմն եւ առաջօք պատրանք մ'է ըստ հեղինակին (p. 30—31) Բաստամեանցի հաստատութիւնն թէ Էջմիածնի Թ. 493 Ձեռագիրն կը բովանդակէ քաղուածքներ "Թէոդոսի Codexից, Յուստինիանոսի Institutionesից եւ մասամբ նաեւ Նորա Codexից, Լեւոն Իսաւրացու եւ Կոստանդին Կոպրոնիմոսի Eclogaից„ եւ այլն (տես Դատաստանագիրք, էջ 119), ծագած Ասորա-Հռովմէական օրինագրոց խորագրէն եւ Յուստինիանոսի անուամբ ծանօթ հատուածներէ, որոնք ապահովապէս հանուած են նոյն կայսեր Novellaներու յետնադարեան խմբագրութենէ մը՝ թերեւս Prochironէ կամ նման քաղուածոյքէ։ Հայ իրաւաբանական հաւաքմանց մէջ չկան նմանապէս բիւզանդական նոր շրջանէ օրէնքներ, եւ եթէ Բասմաջեան կը հաստատէ թէ "Եւքը, Ռուբենեան հարստութեան ժամանակ (1079—1375) կը տեսնուի նաեւ Մանուէլ Կոմնենոսի (1143—1180) կողմանէ հաստատուած օրէնքներու ազդեցութիւնը„ (ԲՆՄ. 1901, էջ 68), առանց տարակուսի հիմ եղած է իրեն մեր Մատենադարանի Թ. 58 Կանոնագրոց մէջ գտնուած "Մանուէլի„ կանոնամասն (Ցուցակ, էջ 274) որ պարզապէս այդ անուամբ կանոնագէտ մը կ'ակնարկէ, եւ բնաւ գործ չունի Մանուէլ կայսեր հետ։

Յաջորդ էջերու մէջ (p. 31—33) քննութեան կ'առնու Հեղինակն հռովմէական օրինագրոց ազդեցութիւնն հայ կանոնագրոց վրայ, յատկապէս ուսումնասիրելով Ձեռագրաց մէջ գրուած ծաւալն եւ կարգն։ Այս կէտն մասնաւորապէս քննութեան նիւթ ըրած է տալու համար կանխաւ ամէն կարեւոր ծանօթութիւն հռովմէական օրինագրոց հայ թարգմանութեան մասին, որուն հրատարակութիւնն կը պատրաստէ (p. 31 ծն.)։ Երկու խումբի կը բաժնէ հայ ձեռագիր Դատաստանագրքերն, Ա. խումբն կանոնագրոց կից կը բովանդակէ նաեւ Մխիթարայ Դատաստանագիրքն (ցանցառ Սմբատայ Մատեանն ալ) եւ հռովմէական օրինագիրքն։ Երեք ստորաբաժանում կը գտնէ հեղինակն այս խմբին մէջ, ուր երբեմն կարգն եւ երբեմն օրինաց մասանց թիւն նոյն չեն։ Բ. խումբն, որ աւելի փոքրագոյն է, կը վերաբերին այն իրաւաբանական ժողովածոյք, ուր կը պակսի կանոնագիրքն։ Աւելորդ կը համարինք հոս օրինակներով խօսիլ։

Հռովմէական օրինագրոց հայերէն թարգմանուած մասանց պատկերն, զոր ի մէջ բերինք վերը, բաւականաչափ կը ցուցընէ թէ հայացուած օրինագիրքն ըստ էական մասանց ոչ բուն յուստինեան եւ ոչ ալ յետնագոյն վերակազմեալ յուստինեան արքայական իրաւունքն է. եւ աւելի նմանութիւն ունի իսաւրեան շրջանի (717—867) իրաւանց հետ, որուն կը վերաբերի նաեւ Eclogaն իւր այլեւայլ յաւելուածներով (օրէնք զինուորացեւն)։ Եւ որովհետեւ Eclogaն վերակազմութեան օրինագիրք (Reformrecht) մը կը ներկայանայ՝ յուստինեան օրինագրոց խմբագրութիւն մը ըստ յունական բարուց եւ սովորութեանց, ասկէ կը հետեւի թէ այսու Հայոց մէջ յունական-իրաւագիտական տարր մը մուտ գտաւ։ Եւ արդէն, ինչպէս բացատրած է Հեղինակն Բ մասին մէջ, յունական բարքն եւ սովորութիւնք ազգակից են հայկականին եւ ծննդակից, այս պարագայէն դիւրաւ կը մեկնուի այս իրաւանց Հայոց քով գտած մեծ ընդունելութիւնն եւ մանաւանդ այն նշանակալից դերն, զոր խաղաց Ասորա-հռովմէական օրինագիրքն հայկական աշխարհին մէջ. եւ Ասորա-հռովմէական օրինագիրքն, ինչպէս L. Mitteistի (Reichsrecht und Volksrecht in östlichen Provinzen des römischen Kaiserreiches, Leipzig 1891) քննութիւնքն ցուցուցին, յէականս նոյնպէս յոյն ժողովրդոց իրաւունքն կը ներկայացընէ, ընիկ ժողովրդեան իրաւանց յարմարցուած։

Որչափ խոր ազդեցութիւն ձգած ալ ըլլայ բիւզանդական իրաւունքն ի Կիլիկիա, տեւողութիւնն չենք կրնար որոշել։ Ազգային թագաւորութեան վերականգնումէն կամաց կամաց զօրացաւ բնիկ հին իրաւունքն ալ. յամի 1265 երեւցաւ Սմբատայ ազգային՝ հայկական Դատաստանագիրքն, որ կերպապէս համառօտութիւն մ'էր Մխիթարայ Մատենին, բայց բովանդակութեամբն շատ տարբեր անկէ։ Հոս ազգային սովորութեան իրաւունքն՝ գիտակցութեամբ եւ յօրինուածօրէն ըստ կարի զտուած օտարամուտ իրաւունքներէ՝ յատուկ ձեւի մէջ ի լոյս կու գայ. ի հարկէ այս կէտն չափաւոր եւ մինչեւ որոշ աստիճան մը իմանալու է, վասն զի նաեւ Սմբատեան Դատաստանագիրքն ազատ չէ եկամուտ խառն տարրներէ, եւ զգալի է միշտ հոս ալ օտար իրաւանց ազդեցութիւնն, եւ նոյն իսկ — թէեւ երկրորդաբար, ինկատի առնուած են գաղղիական Անսիզք, որ առաջին անգամ հոս յերեւան կ'ելլէ։ Բայց միշտ ունի առաւելութիւն Մխիթարայ Դատաստանագրքին վրայ, այնու որ հոս գործոյն ուղն եւ ծուծն կը կազմէ

ազգային սովորութեան իրաւունքն, մինչ Մխիթարայ Դատաստանագրոց մէջ ընդհակառակն ծանրակշռութիւնն օտար իրաւանց շնորհուած է։ Մխիթար օտար օրինաց՝ իբրեւ իւր իրաւագիտական աղբերաց (յաճախ Մովսիսական օրինաց) վրայ կը գործէ, ջանալով օտար իրաւունքներն ազգային սովորութեանց համաձայն եւ միաբան ներկայացընել, եւ անոնց համեմատ ազգայինն յերիւրել եւ մեկնել։ Բոլորովին հակառակն է Սմբատայ եղանակն. Սմբատ հիմ կ'առնու իրեն ազգային սովորութիւնքն եւ անփոփոխ կը պահէ զանոնք այն ամէն դէպքի մէջ, երբ անոնց արժէքն անվիճելի է. իսկ տարակուսական դիպուածոց եւ այնպիսի առիթներու մէջ, երբ այլեւայլ գաւառական սովորութիւնք մի եւ նոյն հարցի մէջ կը հակառակին իրարու, կը դիմէ օտար իրաւանց, զարտուղաբար միայն շեղելով սովորութենէն։

Սմբատեան Դատաստանագիրքն յատկապէս հողային իրաւունքով կը զբաղի. երկրին գաղղիական-արեւմտեան ոճով կազմուած աւատական դրութիւնն շարժառիթ եղաւ նոյն Սմբատ Գունդստաբլին Անտիոքայ գաղղիական Անսիզաց հայ թարգմանութիւն ալ հոգալ (յամի իբր 1260)։

Ցորչափ տեւեց Կիլիկեան հայկական թագաւորութիւնն Սմբատայ Դատաստանագիրքն եւ Անսիզք վայելեցին գործնական նշանակութիւն, բայց երբ կործանեցաւ թագաւորութիւնն, կորսնցուցին նաեւ այդ օրինագրքերն իրենց արժէքն, եւ մոռացութեան մատնուած մնացին մինչեւ վերջերս, երբ յերեւան ելլելով՝ հանրամատչելի դարձան գիտնական աշխարհին։ — Աստ հակառակ հնագոյն Մխիթարայ Դատաստանագիրքն կոչուած էր խաղալ իւր դերն իբրեւ գործնական արժող Դատաստանագիրք մինչեւ նոր ժամանակներս, եւ այն ոչ այնչափ բուն Հայաստանի մէջ, ուր Թրքաց բռնութեան տակ զրկուած էին իրաւագիտական կեանքէ, որչափ գաղթականութեան մէջ։ Մխիթարայ "Դատաստանագիրքն, կը գրէ Կոհլէր, ունի իւր նշանակալից պատմութիւնը։ Ասիկա Հայոց աշխարհակալութեանց ետեւէն գնաց, — ընկերացաւ իրենց մինչեւ ի հեռաստան՝ ուր որ իրենց վաճառականութեան ոգին մղեց զիրենք. եւ դրացի ազգաց մէջ ալ իրեն ճանապարհ հորդեց„ (Հայոց հին իրաւունքը, էջ 16)։ Այս Դատաստանագիրքն իբրեւ օրինաւորապէս վաւերացուած Մատեան յականէ Լեհահայոց գաղթականութեան մէջ եւ ի Վիրս կը գտնենք։

Հայոց ի Լեհաստան առաջին գաղթականութիւնն պատահեցաւ 1046—1064 տարեաց մէջ. երկրորդ մեծագոյն չուն եղաւ Ալփ-Ասլան Թաթարխանի յամի 1239 Անին կործանելէն վերջն, որ Աստրախան փոքր ինչ դադար առնլէ ետքը՝ ճնշուած թաթար բռնակալութենէն՝ ստիպուեցաւ թողուլ եւ մեկնիլ ի Լեհաստան։ Հոս Լեմբերգի օրըստօրէ ծաղկող հայ հասարակութիւնն Կազմիր Գ. արքայէն երկու արտօնագրերով (յամէ 1344 եւ 1356) հրաման ընդունեցաւ հայկական ազգային Դատաստանագրքով յատուկ ատեան մ'ունենալ։ Լեհահայոց այս Դատաստանագրոց եւ յարակից խնդրոց վրայ մանր գրած են Բիշոֆ եւ Կոհլէր գիտնականք, որոնց գործերն ծանօթ են արդէն հայ թարգմանութեամբ. աւելորդ է հետեւաբար կրկնութեանց մէջ մտնել. դիտել կու տանք միայն հեղինակին հետ, որ Լեմբերգի այս հայ հասարակութեան եւ գերմանական իրաւանց համեմատ ապրող բնիկ քաղաքացեաց մէջ երկարատեւ վէճեր ծագեցան, որոնք գլխաւորաբար հայկական իրաւաբանութեան գործածութեան վրայ էին, եւ հազիւ խաղաղեցաւ 1518ին Սիգիսմունդ Ա.ոյ արտօնագրովն, որով կը վաւերացուէր կրկին հայ հասարակութեան ցայժմ գործածած Դատաստանագիրքն։ Քիչ վերջն՝ նոյն 1518ին ուրիշ վճռով մը որոշուեցաւ թէ "Հայք իրենց իրաւունքն ունէն կամ լատին լեզուաւ ընդհանուր ժողովքի բերեն եւ իւր առջեւն հանեն„։ Այսու յերեւան ելաւ "Իրաւունք Լեմբերգի Հայոց լատին լեզուաւ„ Մատեանն, զոր 1519ին հաստատեց թագաւորն ինչ ինչ եղանակաւորմամբ։ Այս Մատեանն նոր խմբագրութիւն մ'էր Մխիթարայ Դատաստանագրոց, ուր նաեւ Աստրա-Հռովմէական Օրինագրքէն ներս առնուած էին հատուածներ։ Հեղինակն մանր նկատողութեան առած է հոս Լեհահայոց Դատաստանագրոցս կազմիչ տարրներն, տախտակով մը նշանակելով մէն մի օրինաց համապատասխան տեղիքն Մխիթարայ Դատաստանագրոց եւ Աստրա-Հռովմէական Օրինագրոց մէջ (p. 38—39), զոր կարելի է գտնել նաեւ Բաստամեանցի քով (էջ 29—31)։

Լեհահայոց Իրաւունքն այնուհետեւ աւելի ընդարձակ ասպարէզ ունեցաւ թէ ի Լեհաստան եւ թէ ի Խրիմ։ Յամի 1601 լատին բնագիրն լեհերէնի թարգմանուեցաւ. Նոյն միջոցներէն է անշուշտ հայատառ թաթարերէն թարգմանութիւնն ալ, որ ձեռագիր կը տեսնուի Վիեննայի Մխիթարեանց եւ Պարիսի Ազգ. Մատենադա-

րանաց մէջ։ Մեր Մատենադարանի թ. 468 Ձեռագիրն՝ գրուած 1575ին ի Կամենից, կը բովանդակէ բաց ի Լեհահայոց Դատաստանագրոցս թաթարերէնէն նաեւ Մխիթարայ Մատենին թարգմանութիւնն (հմմտ. Տաշեան՝ Ցուցակ, էջ 943—45)։ Պարիսի Օրինակն գրուած է 1568ին ի Լեմբերգ (Mscr. Arm. Suppl. Nr. 40)։ Այս ամէնն՝ անկասկած՝ Մխիթարայ իրաւանց Մատենին մեծ նշանակութիւնն կը ցուցընեն։ Յիշենք նաեւ որ Կատարինէ կայսրուհին ռուսերէն ալ թարգմանել տուած է նոյնն Խրիմի Հայոց համար։

Մխիթարայ Դատաստանագիրքն մուտ գտաւ նաեւ ի Վիրս ի ձեռն Վախտանգ Զ Թագաւորին, որ 1676ին, երբ պարապած էր Վրաց Դատաստանագրոց հաւաքման, իւր իշխանութեան ներքեւ գտնուող Հայոց համար ալ մասնաւոր օրէնքներ սահմանել ուզելով՝ բերել տուաւ Էջմիածնէն Հայոց Դատաստանագիրքն (Մխիթարայ Գօշի եւ կից մասերով) եւ նոյնէն հատուածներ առաւ վրացերէն թարգմանութեամբ իւր “Վրաց Դատաստանագիրք„ մատենին մէջ, որ վաւերացուեցաւ 1723ին՝ Վախտանգի գահ բարձրանալէ ետքը։ Գէորգ ԺԳ, Վրաց վերջին Թագաւորին օրով Վախտանգեան Դատաստանագիրքն նորէն ուսումնասիրուեցաւ եւ նոր յաւելուածներով աւելի ընդարձակուեցաւ։

Այս ընդարձակեալ խմբագրութենէն կատարուեցաւ ռուս կառավարութեան հրամանաւ ռուսերէն թարգմանութիւնն, որ հրատարակուեցաւ 1813ին եւ 1823ին[1]։ Հեղինակն հոս ալ մանր համեմատութեանց մէջ կը մտնէ որոշելու համար Վրաց Դատաստանագրոց մէջ Մխիթարէն առնուած հատուածներն (հմմտ. տախտակն p. 42—44) եւ բովանդակութիւնն ծանօթացընելու (p. 41—45), որ աւելորդ է մեզի համար (տես եւ Բաստամեանցի Յառաջաբանն էջ 104—108, եւ Կոհլէր, էջ 17)։

Որչափ ալ ըսուեցաւ վերագոյն թէ յունական-հռովմէական նկարագիր ունեցող ոչ ազգային օրինագրքերն, որոնք երբեմն ի Կիլիկիա կ'արժէին, գործածութենէ դադրեցան եւ մատնուեցան մոռացութեան յաջորդ սերնդոց քով, այս կէտն սակայն չափով իմանալու է։ Ընթացս ժամանակի բոլորովին ալ չանտեսուեցաւ, ինչպէս կարելի է հետեւցընել այն պարագայէն, որ ԺԶ—ԺԸ դարուց ձեռագիր կանոնագրոց կից կը գտնուին յաճախ Մխիթարայ Դատաստանագրոց հետ ասոնք ալ, թէեւ խոստովանելու ալ է որ նոյնչափ ազդեցիկ դեր չկատարեցին։ Թողլով այն կէտն, որ այս յունական օրէնքներէն ինչ ինչ հատուած հայկական միջնորդութեամբ Վախտանգեան եւ Լեհահայոց Դատաստանագրոց մէջ կը նշմարուին — յատկապէս Ասորա-Հռովմէականէն, — կրնանք յիշել հոս որ այս օրէնքներն հայկական այլեւայլ գաղթականութեանց մէջ պահեցին իրենց գործնական գոյութիւնն, մասնաւորապէս Նոր Նախիջեւանի եւ Աստրախանի Հայոց քով[1]։

Յամի 1746 Ռուսաց Սենատի որոշմամբն Աստրախանի Հայոց գաղթականութիւնն ընդունուեցաւ յատուկ ատեան մը՝ ըստ հայկական սեպհական իրաւանց. նոյն արտօնութիւնն յամի 1765 Կատարինէ Բ. կայսրուհին շնորհեց նաեւ Նոր Նախիջեւանի հայ հասարակութեան։ Հայ Դատաստանագիրքն, զոր ներկայացուցին երկու գաղթականութիւնքն ռուս տէրութեան ի հաստատութիւն, զարմանալի կերպով — ինչպէս կը սպասուէր, չէր Մխիթարայ կամ Սմբատայ Դատաստանագիրքն, այլ Բիւզանդական իրաւանց հայ թարգմանութենէն քաղուածոյք մը կամ անոր նոր խմբագրութիւնն։ Այս պայծառ կը տեսնուի նոյն Մատենին Յառաջաբանէն, ուր թէեւ կը յիշուին Թէոդոսի եւ Յուստինիանոսի օրինագրքերն, սակայն հարկ չկայ այսու իմանալ Թէոդոսեան Մատեանն կամ Յուստինիանու Novellaներն, այլ պարզապէս Ասորա-Հռովմէական օրինագիրքն, որ նոյնպէս Թէոդոսի, Յուստինիանու եւն անուններն կը կրէ։ Այս Դատաստանագրքով կառավարուեցաւ Նոր Նախիջեւանու հայ գաղթականութիւնն մինչեւ 1869, երբ ռուսական կառավարութիւնն մուծեց նոր դատաստանական կարգադրութիւններ, բառնալով նախնականն՝ ազգայինը։ Բաստա-

1 Դատաստանագրքէս գերմ. քաղուածքներ տես Haxthausenի գրքին մէջ. նոր թարգմանութիւն մը ըրած է Frenkel: Sammlung der Gesetze des grusinischen Zaren Wachtang VI. Tiflis 1887. Ընտիր ուսումնասիրութիւն մը Վրաց Դատաստանագրոցս վրայ՝ նաեւ Հայոցս համար կարեւոր տես Felix Holldack: Zwei Grundsteine zu einer grusinischen Staats- und Rechtsgeschichte, Leipzig 1907, 8° pp. XII + 256. յատկապէս Vom grusinischen Recht, pp. 89—255. Կը զարմանայ հեղինակն թէ ինչպէս Վախտանգ նախապատուութիւնն Մխիթարայ շնորհած է փոխանակ Սմբատայ Դատաստանագրոց շնորհելու, որ աւելի գործնական նշանակութիւն ունեցած է (p. 97—98)։

1 Այս մասին հեղինակն երկար խօսած է (p. 45—55) քաղելով Բաստամեանցի Յառաջաբանէն (էջ 38–48 եւն). հմմտ. եւ Ն. Ղահազիզեանի յօդուածն Լումայի մէջ (1902, Ա. 148–171). “Նոր Նախիջեւանցոց կայսերաշնորհ հրովարտակը եւ նոցա Դատաստանագիրքը„։ Այս նիւթի վրայ է նաեւ Ալէքսէեւի վերագոյն յիշուած մատեանն։

մեանց (էջ 47 եւն) կը յիշէ Էջմիածնի թ. 735 Ձեռագիրն, որ Նոր Նախիջեւանի Դատաստանագրոց նման բան մ'է, երկար քաղուածքներով ռուսական օրինագրքէ մը — ԺԳ դարու կեղծեաց տակ: Հեղինակն այս մասին նուիրած է էջեր (p. 52—55), որ անպէտ էր: Նորագոյն ժամանակաց անցնելով կը դիտէ հեղինակն (p. 55) թէ Տաճկաստանի եւ Ռուսաստանի Հայք մինչեւ ԺԹ դարու կէսն վայելեցին քաղաքական մեծ ազատութիւն իրենց ներքին հանգամանաց վարչութեան մէջ. 1836ին Ռուսահայք եւ 1860ին Տաճկահայք ընդունեցան ազատական սահմանադրութիւն մը[1]. բայց այն իրաւասութիւնն, որ ունէր լիուլի Հայոց Կաթողիկոսն երկու տէրութեանց մէջ հոգեւոր եւ քաղաքական իրաց նկատմամբ, կամաց կամաց սահմանաւորուեցաւ, նախ ի Ռուսական Հայաստան. դադրեցաւ նաեւ ազգային Դատաստանագրոց գործածութիւնն — Ռուսական համաշխարհային օրինաց բովանդակ Կաւկասի վրայ տարածուելովն:

(Շարունակելի:) Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ



# ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆ

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ՄԸ Ի ԳՈՒՇ-ԱՏԱ (Scala-Nova)

Հոկտեմբեր երկու գեղեցիկ եւ պայծառ առաւօտ մ'էր երբ վանացս Ընդհանրական Աթոռակալ Գեր. Հ. Թադէոս Թագադիր Արքայ Թոռնեանի եւ Գերյ. Հ. Դաւիթ Ծ. Վ. Տուհայի հետ մտանք Զմիւռնիա-Այտըն երկաթուղւոյ գծին կառախումբին միոյն մէջ դէպի Գուշ-Ատա եւ անտի Այտըն երթալու: Ժամը եօթն էր մինչ վայրաշարժ մեքենան սուլեց եւ սկսաւ շարժիլ եւ քաշել կառախումբն դէպ ի յառաջ, քանի մը վայրկենէն հեռացած էինք արդէն կայարանէն: Կառախումբը մերթ սրավար մերթ դանդաղ իւր ընթացքն ընելէ եւ այլ եւ այլ կայարաններու առջեւ դադար առնելէ յետոյ, հուսկ ուրեմն ժամը 9½ին կանգ առաւ Այասուլուքի առջեւ, ուր թողուցինք կառախումբն որ շարունակէ իւր ընթացքը դէպ ի յառաջ եւ մենք քանի մը վայրկեան հանգիստ առնելէ յետոյ մտանք ձիաքարշ կառքի մը մէջ, մեր ճամբան շարունակելու դէպ ի Գուշ-Ատա,

Այասուլուքէ Գուշ-Ատա տանող ճամբան կիսով չափ դաշտային է, կառուղին երկուքի բաժնած է դաշտը: Ուղղոյն երկու կողմը կը տեսնուին քառորդ ժամու չափ Այասուլուք հին քաղքին մնացորդները, գմբեթաւոր շէնքերու գագաթներն, որմերու եւ սիւնակներու կտորներ: Անցմէ քիչ մը հեռանալէ յետոյ ուղղոյն ձախ կողմը հեռուն կը նշմարուին հոս հոն աւերակներ, Corissus անուանեալ լեռան ձորամէջքն՝ բլրակներուն կողերուն վրայ եւ ստորոտն տարածուած, նշանաւոր եւ ամենահին՝ Յոնիականի մայրաքաղաքին՝ Եփեսոսի, եօթնիցս նորոգեալ եւ տեղափոխեալ քաղքի մը մնացորդները, աւերակներ տարածուած ընդարձակ տարածութեան մը մէջ: Այս աւերակները մեր ետին ձգելէ յետոյ, դաշտային ուղին ալ տակաւ առ տակաւ փոխուած կը գտնենք զառ ի վեր բլրակներու՝ հովտի մը՝ եւ Corissus լերան ոտքին առջեւ բարձրացած լեռնակներու վրայ բացուած խորտուբորտ ճամբու մը: Հովտին մէջ յառաջ երթալով հոս ալ կը տեսնուին այլ եւ այլ աւերակներու մնացորդներ, մեծ ջրուղի մը լերան կողին կրթնած. քիչ մը հեռուն պարիսպ մը թանձր եւ հաստատուն, որուն վերին մասերուն շինութեան գործածուած են ջրոյ հին խողովակներ կղմինտրէ մէջերնին քարացած հողով լի:

Հովիտս ձգելով լեռնակներու վրայ կը բարձրանանք, ուր հարկ կ'ըլլայ տեղ տեղ վար իջնալ կառքէն, խնայել ձիերուն որ զառ ի վեր եւ անհարթ ճամբուն վրայէն հեշտեաւ քաշեն կառքը: Մինչ այս մինչ այն օձաձեւ ճամբէն լեռնակներու բարձրութեան վրայ հասնելէ յետոյ, առջեւնիս կը բացուի գեղեցիկ տեսարան մը, ծովն իւր ընդարձակութեամբ եւ հեռուն հեռուն Սամոս կղզւոյն լեռնակներու բարձրութենէն դարձեալ զառ

[1] Վերը առիթ ունեցանք քանի մ'ուսումնասիրութիւն նշանակել այս շրջանի վրայ. յիշենք հոս նաեւ Télémaque Tutundjian: Du pacte politique entre l'Éta ottoman et les nations non-musulmanes de la Turquie. Avec un Exposé de la Constitution arménienne de 1863, Lausanne 1904, 8° pp. 113. — 1860ի Սահմանադրութեան գաղ. թարգմանութիւնն առն Prud'homme: Constitution nationale des Arméniens, traduite de l'arménien sur le document original, Paris 1862. «Ազգային Սահմանադրութիւն Հայոց». Կ. Պ. 1860. Նոյնն «Հաստատեալ (1863) եւ վերաքննեալ» (Հայ. տաճկ.), Կ. Պ. 1863. Բ. տպ. Գահիրէ, 1901:

վրայ Lidén, Arm. Stud. էջ 51—52, հմմտ. մանաւանդ կիւմր. gyrru "ածել, ղրկել, եւ Հայ. ածել:

3. Նոյն արմ.-էն իրեն բացատրութիւնը կը գտնէ Հայ. ծուռ (ո-արմ.) "թիւր" ալ = *gōrsos, հմմտ. նշանակութեան վրայ. հանգղ. cerran "to turn" (drehen):

4. Հայ. ծաղիկ ածել-ի հետ կապուելու է ըստ իս (հմմտ. ածել), արմ.-ի ծ այլակերպութենէն es- ընդարձակութեամբ *gəslí-էն:

5. Հայ. միջատ *միջա-հատ-ք-էն է, բարդութիւնը մէջ եւ հատ(անել) բառերուն, հմմտ. նշանակութեան վրայ լատ. in-sec-tum, որմէ գ. Insekt "միջատք" առ. seco "կտրել":

6. Հայ. հովանի *o-ǵniyos-էն է. ըստ իս, հմմտ. լատ. op-ācus "schattig" ըստ Walde-ի 431 սկզբնաբար "entgegengesetzt, der Sonne abgewendet", որ յատկապէս op-ին ալ նշանակութիւն է եւ այսպէս հովանի ձեւին վրայ ալ հասկնալու է:

(Շարունակելի:) ՂՈՒԿԱՍ ԲԱԴՐՈՒՔԱՆԵԱՆ



## ԻՐԱՒԱԳԻՏԱԿԱՆ

### ԱԿՆԱՐԿ ՄԸ ՀԱՅ ԻՐԱՒԱՆՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ ԵՒ Յ. ԿԱՐՍՏԻ ՆՈՐ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

(Շարունակութիւն:)

**3.**

*Ցայս վայր մեր հետազօտութիւնք հայ իրաւանց պատմութեան շուրջը յատկապէս երկու իրաւանցմատեան յերեւան հանեցին, Մխիթար Գօշի եւ Սմբատայ: Կը մնայ այժմ ի մօտոյ նկատել իւրաքանչիւրն առանձին առանձին:*

Բ. Հայոց աշխարհիկ իրաւանց Մատեան. Մխիթարայ կամ Մեծ Հայաստանի Դատաստանագիրքը. Սմբատայ կամ Կիլիկեան Օրէնսգիրքը (p. 56—99):

Տեսնենք նախ

1. ՄԽԻԹԱՐԱՅ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔԸ:

ա. Ձեռագիրք: Թաստամեանց իւր ընդարձակ Յառաջաբանին մէջ նուիրած է առանձին բաժին մը Մխիթարայ Դատաստանագրոց ծանօթ ձեռագիրներուն (էջ 109—114). օգտուելով այս տեղեկութիւններէն նաեւ Ուսուցչապետն Կարստ (p. 56—58) խօսած է այս մասին համեստ գլխով մը: Այս նկատմամբ հայ ընթերցողներն Թաստամեանցին խաւրելով, կը բաւականանք հակիրճ ամփոփումով.

1. Էջմիածին կը գտնուի ըստ Թաստամեանցի հետեւեալ թուերն (հին թուարկութեամբ). թ. 488, 489, 490, 492, 749, օրինակ մ'ալ Սինոդի Մատենադարանին մէջ: Ասոնցմէ ամէնէն հնագոյնն է թ. 492, յամէ 1295:

2. Վենետիկ՝ Մխիթարեանց քով՝ թ. 1237, որ ըստ Հ. Ալիշ. 1184էն՝ ինքնին իսկ Մխիթարայ ձեռքէն: Բաց ասկից թ. 214, 368, 434, 451, 590, 993, 1449 եւն:

3. Վիեննա՝ Մխիթարեանց քով. թ. 205, որ կը համապատասխանէ Էջմիածնի թ. 492ին: Վերջերս ստացած է նաեւ թ. 579, 581:

4. Մոսկուա՝ Լազարեան Ճեմարանը:

5. Պարիս՝ Ազգ. Մատենադարանն, թ. 55, 111, 103, 104:

6. Բերլին՝ Արքունական Մատ. թ. 56:

Մասնաւոր անձանց օրինակներն. ա. Կարապետ Ախալցխայի եպիսկոպոսին. բ. Սարգիս եպ. Ջալալեանցի:

Կարեւորագոյններն Էջմ. թ. 492 եւ Կարապետ եպիսկոպոսի ձեռագիրներն են:

բ. Ձեռագրաց դասաւորութիւնք եւ խմբաւորութիւնք (p. 58—62): Այս ծանօթ ձեռագիրները կարելի է երկու խմբի բաժնել.

ա. խումբ, որուն ներկայացուցիչն են Էջմիածնի թ. 490 եւ 492:

բ. խումբ, որուն տակ կ'երթան միւս ձեռագիրք:

Այսպիսի դասաւորութիւն հարկ է ընել նկատելով յատկապէս արտաքին յօրինուածութիւն, որով կը զանազանուին իրարմէ ձեռագիրք: Ա. խմբի ձեռագիրք բնագիրն կրկին մասի կամ գրոց կը բաժնեն. 1. Կանոնական կամ Եկեղեցական, եւ 2. Աշխարհական կամ Քաղաքական. երկու գրքերն ալ իրենց յատուկ գլխակարգութեամբ: Այս խումբն ամէնէն հնագոյն բնագիրն կը ներկայացընէ, ուր չկայ տակաւին նիւթոց յօրինուածութիւն եւ գլխոց կարգն գործածուած աղբերց համեմատ կը յաջորդէ, ասկէ նիւթն ալ այնպէս դասաւորուած է եւ ուսումնասիրուած, ինչպէս աղբիւրներու մէջ էին:

Այս պարզապէս կերպական բաժանումը կանոնական եւ աշխարհական իրաւունքի, գոյութիւն չունի Բ. խմբին մէջ. հոս բովանդակ Դատաստանագիրքը մէկ գիրք է, գլխակարգութիւնն ալ ըստ այսմ անընդհատ կ'ընթանայ: Բաց ասկից մուծուած է նաեւ նիւթոց ներքին յօրինուածութիւն մը: Այս պատճառաւ Բ. խումբը առաջնոյն հանդէպ կը մատնէ յայտ-

նապէս իւր կրտսերութիւնը, եւ Սմբատայ Օրինագրոց նմանութիւն մը կը կրէ։

Բ. խմբին տարբերութիւնն առաջնէն յեւրեւան կ'ելլէ նմանապէս բովանդակութեան կողմանէ. կարգ մը գլուխներ, որոնք Ա.ին մէջ կը գտնուին, Բ.ին մէջ ի բաց ձգուած են։ Այսպէս Ա. խմբի կանոնական գրքին իբր վերջաբան դրուած ՃԻԱ—ՃԻԳ գլուխներն Բ.ին մէջ ներս չեն առնուած եւ ասոր տեղ մուծուած է գինեմոլութեան վրայ ինքնակաց կանոն մը, որ Ա.ին մէջ չկայ, թէեւ, ինչպէս կը դիտէ Ուսուցչապետն (p. 59), թէ' վերջին յաւելուածս եւ թէ Ա. խմբին 121—123 գլուխներն անվաւեր, յետոյ ներմուծուած մասունք հարկ է նկատել։

Մանր նկատելով Բ. խմբի Ձեռագիրներն, կրնանք նոր դասաւորութիւն մ'ալ ընել, երկու ստորաբաժանմամբ.

ա. ստորաձան, Ձեռ. Վեննա. Թ. 489.

բ. ստորաձան, Ձեռ. Էջմ. Թ. 488. Սին. եւ միւսները։

Եզական տեղ կը բռնէ Թ. 749ը, որ մասամբ Ա. խմբի կը պատկանի՝ կրկին գրոց բաժանմամբ եւ յատուկ գլխակարգութեամբ, եւ մասամբ Բ. խմբին 2. ստորաձ.՝ նիւթոց եւ լեզուի տեսակէտով։

Այս դասաւորութիւնն անհրաժեշտ կարեւոր է Ձեռագրաց արժէքն գնահատելու համար։ Ա. խմբին համեմատութեամբ Բ. (= Բ. խումբ. 1. ստորաձ.) եւ Գ. (= Բ. խմբ. 2. ստորաձ.) խմբերն կրտսերագոյն ժամանակի խմբագրութիւն կ'երեւան։ Առաջնոյն ամենէն մերձաւորն է Բ. խմբ. որուն առարկայական տարբերութիւնք երկուքին մէջ էական եւ արտակարգի չեն, աւելի կերպական են փոփոխութիւնք եւ խոտորմունք, որ զգալի է յատկապէս Թ. 489ի մէջ, որ լեզուի կողմանէ ռամկացած, հարթուած է եւ նիւթի կողմանէ քաջ համառօտուած, մանաւորապէս համառօտուած են այն յօդուածք, որոնք գործնական նշանակութիւն չունէին, այսպիսիք երբեմն ամբողջութեամբ ալ դուրս ձգուած են. օր համար յապաւուած է հոս Դատաստանագրոց Ներածութիւնն։ Ընդհակառակն Գ. խումբն ցոյց կու տայ նոյն իսկ բնագրէն էական փոփոխութիւն մը՝ կատարուած գիտակցութեամբ եւ մասնաւոր ձգտումով։ Այս ձգտումն կը ճգնի յատկապէս Ա. խմբին մէջ տիրող կանոնական տարրներն ամփոփել, կրճատել եւ ըստ կարի ազգային ժողովրդական եւ սովորութեան իրաւունք մուծանել եւ արժեցնել։ Եւ այս շատ բնական էր։ Մխիթարայ Դատաստանագիրքն իւր առաջին խմբագրութեան մէջ շատ անբաւական էր ժողովրդական նշանակութիւն ստանալու. որպէս զի մտենար ժողովրդեան, ստանար քաղաքական նշանակութիւն, հարկ էր յարմարցընել ըստ այնմ։ Երբ ի Կիլիկիա ազգութիւնը նոր ծլող հաստութեան ժամանակ նոր կազմակերպութիւն ընդունեցաւ, հարկ էր այնուհետեւ անոր համեմատ տեղի տալ նոր հօսանքին։ Մխիթարայ Դատաստանագրոց այս վերանորոգութիւնը կատարուեցաւ ներկայ Գ. խմբագրութեամբ, որ ամենանշաններով, թէ առարկայական եւ թէ լեզուական, դէպ ի Կիլիկիա կը միտի, կիլիկեան ժամանակն կը մատնանշէ եւ յարմարցուած է այն կողման ժողովրդեան կարգերուն։ Այս իսկ պատճառաւ Գ. խմբագրութիւնս կը հանդիսանայ նախակարապետ մը եւ նախատիպ օրինակ ապագայ Սմբատեան Օրինագրոց. այնպէս որ այսօր Հայոց բուն իրաւանց, այս է՝ ազգային սովորութական իրաւանց ծանօթանալու համար չի կրնար Մխիթարայ Նախնական Դատաստանագրոց ամենէն մերձաւորագոյն՝ Ա. խմբագրութիւնն առաջին տեղին բռնել, այլ Գ. խմբագրութիւնն, որ զտուած է կանոնական եւ օտար տարրներէ, եւ աւելի յստակ կը պատկերէ ժողովրդական իրաւունքը։

Եթէ սակայն բանասիրական-բնագրաքննական հայեացքով նայինք, նախապատուութիւնը հարկ է Ա. խմբին տալ, եւ այս տեսակէտով ուղիղ է Բաստամեանցի ընթացքը, որ իւր հրատարակութեան հիմն ընտրած է նախնականին ամենէն մերձաւորագոյն Թ. 492 Ձեռագիրն. բայց ոչ konsequent, երբ բնագրին մէջ մերթ ներս կ'առնու նաեւ Բ. եւ Գ. խմբերէն հատուածներ, որոնք չկան Ա.ի մէջ, հետեւաբար եւ չեն սկզբնական, այլ անագանագոյն յաւելուածներ եւ բնագրին ընդլայնում։

**Դ. Մխիթարայ Դատաստանագրոյ ծագումն, յօրինուածութիւնն եւ հանգամանքը** (p. 62—93)։ Մխիթարայ դատաստանագրոց նշանակութիւնն իմանալու համար հարկ է համառօտիւ ծանօթանալ նախ հեղինակին անձնաւորութեան եւ յարաբերութեանց։

Դատաստանագրոցս հեղինակն ճանչցուած է Մխիթար, մականուամբ "Գօշ"։ Ծնած ԺԲ դարու երկրորդ կիսուն ի Գանձակ (այսօր Եղիսաբեթպոլ) Սելջուկեանց եւ Թաթարաց տիրապետութեան ժամանակ, "ի ժամանակի մնացելոց սակաւ իշխանաց ի կողմանս խաչենոյ". ի մանուկ տիոց կու տայ ինք զինք ուսման առ ոտս Յովհ. Տաւուշեցւոյ, որմէ կ'ընդունի նաեւ վար-

դապետութեան աստիճանը: Ուսումը զարգացընելու նպատակաւ կը ճանապարհորդէ գիտութեան կեդրոն հռչակուած Սեաւ լեռան վանքը ի Կիլիկիա. ի դարձին կարին կը ծանօթանայ Կայենոյ վրացի իշխ. Քուրդի հետ: Դառնալով ի Գանձակ մահմետական բռնակալներու ճնշումներէ նեղուած՝ քիչ վերջը կը թողու հայրենիքը եւ Աղուանից Ստեփանոս կաթողիկոսի հրաւիրանօք կ'ապաւինի Արցախի Խաչէն գաւառը Հաթերք ամրոցին տէր Վախտանգ իշխանին քով, ուր երկար կը մնայ: Նոյն ատենները իրեն ծանօթ Քուրդ իշխանը կը վերադառնայ հայրենիք եւ կը տիրէ նախկին իշխանութեան. Մխիթար անոր խնդրանօք իւր բնակութիւնն կը փոխէ Կայենոյ Գետիկ վանքը: Գետիկ սակայն քիչ յետոյ թշնամեաց ոտից տակ անապատ դառնալով, կը ստիպուի Մխիթար իւր հասարակութեան հետ դիմել Զաքարէ եւ Իւանէ եղբարց երկիրը, որոնք նոյնպէս վրացի իշխան էին. Իւանէ փեսայացած էր Քուրդի հետ: Հոս 1193ին Զաքարէ եւ Իւանէ եղբարց, Ստեփ. կաթ. ի եւ Հաթերքոյ Վախտանգ իշխանին ձեռնտուութեամբ կը կառուցանէ նոր վանք մը — զոր առաջնոյն անուամբ կը կոչէ "Նոր Գետիկ,, որուն վանահայր ալ կը կարգուի: Մեծ համբաւ կը վայելէր Մխիթար, ժամանակակիցք կը կոչէին զինքը "Մեծ վարդապետ,, եւ եկեղեցական եւ գիտնական խնդրոց մէջ վճռական կը նկատէին իւր հեղինակութիւնը, ինչպէս ԺԳ.-դարու առաջին տասնեակի խնդիրներէ կը տեսնուի: Վախճանեցաւ 1213ին:

Մխիթար իբրեւ "վարդապետ,, ոչ միայն կանոնական իրաւանց, այլ ըստ պահանջման ժամանակին քաղաքական հանգամանաց, նաեւ քաղաքական իրաւանց եւ դատաստանական խնդիրներու պէտք էր ծանօթ ըլլալ: Վարդապետը[1] թէ եպիսկոպոսին օգնականն էր եւ թէ եպիսկոպոսական դատաստաններու մէջ գահագլուխը: Ըստ այսմ ինքը թէ միայն տեղական իրաւանց ծանօթ չէր, այլ նաեւ դրացի ժողովրդոց իրաւունքի տեղեակ էր, կարելի է ցուցընել իւր Դատաստանագրոց շատ տեղերէն, ուր այլեւայլ օրէնքներ կը յիշատակէ յունահռոմէական, իսլամական եւ վրական իրաւունքէն եւ կը համեմատէ հայկականին հետ: Թէ ինչ ճամբով ստացաւ Մխիթար այս ծանօթութիւնը, սկզբնակա՞ն աղբիւրներն ուսումնասիրելով թէ բերանացի աւանդութենէ օգտուելով, կարելի չէ ճշդիւ ըսել: Յամենայն դէպս ծանօթ չէր յունարէնի, ինչպէս Կարստ կը միտի ընդունիլ. իսկ յոյն աղբիւրներն գործածած է հայ թարգմանութեամբ (p. 64, ծն.): Թէ գրաւոր աղբիւրներէ զատ նաեւ բերանացի աւանդութենէ եւս օգտուած է, ինքն ալ կը վկայէ. այսպէս Դատաստանագրոց ներածութեան մէջ (էջ 65). "Երկրորդ առնումք յամենայն ազգաց քրիստոնէից իբրեւ ի հարազատ եղբարց, զոր լուաք եւ տեսաք ի նոսա բարւոք դատաստանս՝ հաւաքեմք ի գիրս,,: Արդեամբք ալ "Մեծ Վարդապետը,, իւր բազմավաստակ կենաց ընթացքին մէջ ճանապարհորդութիւններով եւ դեգերումներով դրացի երկիրները — ի Կիլիկիա եւ վրական սահմանները, նպաստաւոր վիճակի մէջ էր օտար ազգաց իրաւունքները դատաստաններու մէջ կենդանի հրահանգներէ եւ անմիջական գործածութենէ սորվելու: Դարձեալ եղան առիթներ, երբ կարգ մը ներքին եւ արտաքին խնդիրներու մէջ իբրեւ գործնական դատաստանագրոց ի կոչմանէ հեղինակ ճանչցուեցաւ: Դոյզն պէտք չէ նկատել նաեւ իւր անդադար յարաբերութիւնքը իշխանական արքունեաց հետ, գլխաւորաբար իւր երկարժամանակեայ դադարումը Վախտանգայ քով, որ մեծապէս ազդեցութիւն թողուցած պիտի ըլլայ այս տեսակէտով: Այս շրջաններու մէջ եւ այսպիսի ազդեցութեան ներքեւ էր, որ ծագեցաւ իւր մէջ դատաստանագրքի մը յօրինման գաղափարը[1]:

Դատաստանագիրքը կազմելու ժամանակ ընտրուած եղանակն եւ յօրինուածութիւնն

---

1 Վարդապետի կանոնական նշանակութեան մասին տես Բ. Վ. Կիւլէսէրեան՝ "Վարդապետութեան աստիճանները մեր մէջ,,. Լոյս 1905, էջ 1079. 1906, էջ 55–60, 78–82, 102—106 եւն:

1 Մխիթար բաց ի Դատաստանագրքէ հեղինակած է նաեւ ուրիշ շատ մը գրութիւններ. Հարեւանցի յիշենք հոս.

1. Մեկնութիւն Երեմիայի.
2. „ Եսայեայ.
3. „ ԺԲ. Մարգարէից.
4. „ Արարածոց.
5. Առակներ.
6. Թուղթ յաղագս Վրաց.
7. Բան խրատու վասն զգուշութեամբ սպասաւորել մարմնոյ եւ արեան Տեառն:

Մտադրութեան արժանի են այս գրութիւններէն մանաւանդ վերջին երեքը, որոնց մէջ կը ցոլացնէ հեղինակն շատ բացայայտ կերպով իւր դատելու կորովութիւնն, եւ դատաստանական վիճական խնդրոց մէջ իւր արդարադատութիւնն եւ ճոխութիւնը. մանաւանդ Յղ. Վրաց թղթին մէջ (հմտ. ԱՐՐՏ. 1900, էջ 497–504, 562—68, 1901, էջ 55–61, 121–127. Առակներու մասին հմմտ. Կարստ, p. 65 ծան.):

*մանրամասն նկարագրած է Մխիթար իւր Ներածութեան մէջ (էջ 5 եւն, կարստ, p. 66—81) ուսկից յառաջբերութիւններ աւելորդ են հոս։ Մխիթարայ բացատրութենէն կը տեսնուի թէ.*

1. *Ինքը չի գիտեր բնաւ հայթայթել ամէն ժամանակի համար բացարձակապէս արժող Դատաստանագիրք մը, այլ պարզապէս ընծեռել ձեռնարկ մը կամ ուղեգիծ մը, զոր ընդարձակել եւ ամբողջացընել յաջորդներու կը թողու։ Այս ծրագրին լիով կը համապատասխանէ անտաշ, անյարդար կերպարանքը, որով կը ներկայանայ մեզի գործքը իւր հնագոյն ձեւին մէջ։ Ուղիղ է Թաստամեանցի նկատողութիւնն թէ Դատաստանագիրքն անկատար գործքի մը ազդեցութիւնը կը թողու մեր վրայ, որ թերեւս հեղինակին մահուամբն ընդհատուած ըլլայ։*

2. *Մխիթարայ գործն ըստ նկարագրին եւ որպիսութեան, ամփոփում մ'է կանոնագրոց. գրեթէ բովանդակ Դատաստանագիրքն նուիրուած է եկեղեցական կանոնական իրաւանց, եւ ակամայ կը ձգէ մեր միտքը արեւելեան եկեղեցւոյ* nomocanon*ը. հեղինակէն աշխարհական իրաւանց գիրքը պարզապէս եկեղեցականին համար յաւելուած մը եւ անոր ընդարձակում մը նկատուած է։ Եւ արդէն գրոցս յօրինման նպատակն եղած է ընդհանրապէս տալ քրիստոնէական-հայկական հասարակաց իրաւանց մատեան մը՝ հիմնած մովսիսական-կանոնական իրաւանց վրայ. մատեան մը, ուր բիւզանդական-հռովմէական եւ յունական ընկալեալ իրաւունքներն հաշտեցուին զաւառական պէսպէս սովորութական իրաւունքներու հետ։ Այս տեսակէտով եթէ նայինք, կը պարզուին մեր աչաց իրենց յստակութեան մէջ Դատաստանագրոցս ձգտումը, մեթոդը, յօրինուածութիւնն եւ հանգամանքները։ Մխիթարայ ձգտումն եղած է հոս նաեւ սովորութական իրաւուքները նշանաւորելի եւ արժող ընծայեցընել։*

3. *Ծանրանալով Մխիթարայ գործածած աղբիւրներուն վրայ՝ կընանք հոս մատնանշել յատկապէս.*

1. *Բնական օրէնք.*

2. *Քրիստոնեայ ժողովրդոց սովորութական իրաւունք.*

3. *Մահմետական իրաւունք.*

4. *Մովսիսական օրէնք.*

5. *Կանոնական իրաւունք։*

*Գլխաւոր աղբիւր ծառայած են Ս. Գիրքը եւ կանոնագիրքը, ուսկից մէն մի քաղուած կարելի է յանուանէ նշանակել (տես այս մասին՝* p. 85—91)։ *Որչափ ալ սակայն ընդարձակենք մեր հետազօտութիւնը աղբերաց մասին, պիտի մնան դեռ կարգ մը ինքնուրոյն օրէնքներ, որոնց աղբիւրն առ այժմ ի վիճակի չենք ցուցընել յականէ յանուանէ. այսպէս. Բ. գրոց* 35—38, 54—61, 105—130 *գլուխներն։ Ուսուցչապետն կը միտի ասոնցմէ ոմանք սովորութական իրաւունքէն վերցուած, եւ ոմանք Ասորական* nomocanon*էն ներս առնուած համարիլ* (p. 109—113)։

*Մահմետական իրաւանց ծանօթութիւնն ստացած է անշուշտ հանապազօրեայ շփմամբ արաբ-թուրքական վարչութեան հետ։ Արդեամբք ալ Դատաստանագրոց մէջ երբ խօսք կ'ըլլայ այս կարգի իրաւանց վրայ՝ յատկապէս մահմետական սովորութեան իրաւունքն կ'ակնարկուի, միայն ինչ ինչ տեղեր, մանաւանդ պէս պատժական իրաւանց եւ դատաստանի վերաբերեալ խնդիրներու մէջ կ'երեւայ թէ ազդուած է ուղղակի մահմետական իրաւունքէն եւ իրաւագիտութենէն* (p. 92), *նոյն իսկ գրի առնելով։*

*Իսկ քրիստոնեայ ժողովրդոց սովորութիւնք ըսելով իմանալու է գլխաւորաբար ասորական եւ յունական իրաւունքները. ի թիւս որոնց, նաեւ վրականը։ Այս զգալի է Դատաստանագրոց շատ մ'ակնարկութիւններէն (էջ* 31, 165)։ *Յունական իրաւունքներու ծանօթացած է ապահովապէս բերանացի աւանդութենէն, այն ձեւով, ինչպէս յընթացս դարուց մնացած է հայ ժողովրդական կենաց մէջ եւ ընդունուած։ Յունական (հռովմէական) իրաւագիտական մատենագրութենէն, որչափ կը տեսնուի, միայն միջնորդաբար — հայերէն կամ ասորերէն թարգմանութեամբ — օգտուած է, քանի որ տարակուսական է հեղինակին հմտութիւնն յունարէնի։*

*Դիւրահասկանալի է բնական օրէնքով ակնարկուածը, այս է՝ յաւիտենական, պարզ մտօք՝ իրին բնութենէն ճանաչելի՝ ամէնուն համար արժող, անփոփոխելի իրաւունքը։ Բայց այս բնական օրէնքն Մխիթարայ քով անձուկ մտօք չէր. նա զօրութենաբար այնու նաեւ սովորութական իրաւանց հիմնական սկզբունքները կը հասկնայ։*

*Այս հնգապատիկ աղբիւրներն մի առ մի մատնանշելով չենք ուզեր բնաւ կարծել տալ*

թէ Մխիթարայ գործը օտար իրաւանց հաւաքածոյ մ'է. Դատաստանագրոց մէջ, ինչպէս յաճախ առիթ եղաւ ըսելու, նշանաւոր դեր խաղացած է նաեւ ազգային սովորութական իրաւունքը։ Նոյն իսկ մովսիսական-կանոնական օրէնքները, որոնք հիմն կազմած էին գործոյս, ուրիշ բան չեն շատ տեղ, բայց եթէ արտաքին յենակէտեր պարզապէս, որոնց, իբրեւ բարձրագոյն ճոխութեան վրայ յեցած կը յերիւրէ իւր սեպհական տեսութիւններն — աւելի օգտուելով հայ ժողովրդական իրաւունքէն եւ անոր յարմարցընելով։

Դ. Դատաստանագրոց արժէքը։ Կարեւոր հարց մ'է վերջապէս, թէ ինչ գործնական արժէք եւ գործածութիւն ստացաւ Մխիթարայ Դատաստանագիրքը դատաստաններու մէջ (p. 98—99)։

Մխիթարայ Դատաստանագիրքը իբրեւ իրաւանց մատեան կոչուած էր ընդարձակ մոօք եւ սահմանով՝ թէ կանոնական եւ թէ քաղաքական խնդիրներու մէջ դատավարութեան կանոնը ցոյց տալ, եւ այս հաւասարապէս թէ հոգեւոր-եպիսկոպոսական եւ թէ աշխարհական դատերու մէջ։ Դատաստանագիրքս իբրեւ առանձնական (privat) հաւաքածոյ իրաւանց յօրինուած՝ առանց որ եւ իցէ քաղաքական վաւերացման կամ հրատարակման՝ թէեւ մերկ էր ընդհանուր պարտաւորիչ իրաւունքի զօրութենէն, հետեւաբար պարունակած օրէնքներն ալ պարզապէս ազատական (facultativ) էին եւ ոչ օրինաւոր, բայց որովհետեւ սովորութական իրաւանց մեծ տեղ շնորհուած էր, այս իսկ պատճառաւ ոչ միայն դատաստանական խնդիրներու մէջ գործածուած է, այլ եւ ամէն ժամանակի համար ի վկայութիւն բերուած եւ մանաւորապէս իբրեւ հայ ազգային Դատաստանագիրք վաւերացուած է։ Թէ նոյն իսկ իւր կենդանութեան ժամանակ զինքը գրոցս յօրինման յորդորող Վախտանգի, Իւանէի, Զաքարէի եւ այլոց քաղաքական դատերու մէջ ի կիրառութեան էր, պայծառ կը տեսնուի իւր յիշատակարանէն, ուր կ'ըսէ. "Տէր Աստուած վայելել տացէ աստուածասէր եւ բարեպաշտ իշխանաց իշխանին Վախտանկայ, որդւոյ Հասանայ ի կողմանս իւր զԳիրքս դատաստանի, անսխալ ուղղութեամբ վարել զպատուիրան սորին" (Հայապատում, բ. 2, էջ 389)։ — Թէ նաեւ եպիսկոպոսական դատաստաններու մէջ — գլխաւորաբար գործոյն Մեկենաս՝ Աղուանից Ստեփանոս կաթողիկոսին միջնորդութեամբ, եւ ապա ուրիշ տեղեր ալ մուծուած է, տարակուսի տակ չի կրնար ձգուիլ։ Բայց դատաստանագրոցս մեծ նշանակութեան գեղեցկագոյն վկայք են Ձեռագիրք, որոնք այնպէս մեծ քանակութեամբ չորս կողմ սփռուած են — ինչ ինչ փոփոխութիւններով։

Յիշեցինք վերը, թէ Դատաստանագրոցս Գ. խմբագրութիւնը Կիլիկեան հողի վրայ ծագած էր, եւ այն Սմբատայ օրինագրոց երեւալէն յառաջ, որ ապացոյց է, թէ այն կողմերն ալ — ի Փոքր Հայս — կը ծառայէր դատերու ժամանակ ուղղեցոյց մը, կանոն մը. այս նշանակութիւնն չկորսնցուց յաջորդ սերնդեան քով, նաեւ երբ Սմբատայ Օրինագիրքը պաշտօնապէս վաւերացուեցաւ Կիլիկեան տէրութեան մէջ, ուր տիրող հանդիսացաւ բացառապէս մինչեւ պետութեան կործանումը. մինչդեռ Մխիթարայ Դատաստանագիրքը շատ աւելի ընդարձակ նուաճումներ ըրաւ՝ աւելի երկար տեւողութեամբ. թէ ի Մեծ Հայս եւ թէ գաղթականութեանց մէջ նկատուեցաւ մի միայն հետեւելի Դատաստանագիրք. ցայսօր իսկ իւր գործնական նշանակութիւնն պահած է Էջմիածնի Սինոդի մէջ։

(Շարունակելի։) Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ



# ԱՅԼԵՒԱՅԼՔ

## 1. ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂԻԿ ԳԵՐՄԱՆԵՐԷՆ

Կ. Կրումբախէրի Բիւզ. Մատ. Պատմութեան մէջ (էջ 406—407) կը ծանուցուէր 1897ին թէ կը պատրաստուին հայ երկու պատմագրաց՝ Փ. Բիւզանդի եւ Ստ. Ասողկան գերմաներէն թարգմանութիւնք, առաջինն Հ. Գելցերէ եւ Լ. Բաքայեանէ, եւ երկրորդը A. Burckhardtէ։ Մեծանուն հանգուցելոյն ձեռնարկութեան մասին կը պակսի տեղեկութիւն. բայց Burckhardt հանած էր ի գլուխ իւր թարգմանութիւնն, որ եւ յանձնուած էր տպագրութեան արդէն 1898ին (Gelzer, Sext. Jul. Africanus und die byz. Chronologie, II, 2. p. 467) եւ ամբողջապէս լոյս տեսաւ անցեալ տարի խորագրոյս ներքեւ. Des Stephanos von Taron Armenische Geschichte, aus dem Altarmenischen übersetzt von H. Gelzer und Aug. Burckhardt. Leipzig